# ՇՈՒՏՈՎ ԿԳԱ ՄԵՐ ՀԵՐԹԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

Առավոտ է արևոտ:
Մենք շարվել ենք իրար մոտ,
Կարմիր աստղեր կրծքներիս,
Սաղավարտներ գլխներիս,
Սպասում ենք մեր հերթին,
Որ մասնակցենք շքերթին:
Ես նստել եմ հեծանիվ,
Որ շատ արագ ինձ տանի,
Իսկ Կարոն՝ իր նոր ավտոն,
Ու կանչում է.— Տոն է, տո՜ն...

Բա Սեակը, Պերճուհին...
Հո չեմ ՞թվի ամենքին:
Շուտով կգա մեր հերթը
Եվ կսկսենք շքերթը:
Զինվորների նման քաջ
Կսլանանք մենք առաջ,
Ու մեր կարմիր ջոկատով
Կանցնենք երգով ու կարգով.
Եվ կգոչենք միասին.
[illegible]՜ն կարմիր մայիսին...



№ 5 1959 թ.
ՄԱՅԻՍ




ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ



Նկ. Վ. Խովանյանի

# Արծաթափայլ ժապավեններ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Ասում են՝ հնում մեկը մի անգամ կանգնել է ոսկերիչ վարպետի լուսամուտի առաջ, երկար նայել է նրա մանրակրկիտ ու գեղեցիկ աշխատանքին, զարմացել նրա ճարտար մատներով, որ ոսկու փոքրիկ կտորի վրա նուրբ ու քնքուշ նախշեր են անում։ Երկար է նայել, վերջապես վարպետը բարձրացրել է գլուխն ու ժպտալով հարցրել.

— Ի՞նչ ես նայում, բարեկամ։

— Զարմանում եմ,— ասել է անծանոթը,— զարմանում եմ ու հիանում քո ճարտարությամբ, վարպե՛տ։

Ժպիտը չքացել է ոսկերչի երեսից, աչքերը մռայլվել են, հառաչել է.

— Է՜, բարեկամս, ես ինչ վարպետ եմ որ, վարպետը քար կտաշի, շինություն կշարի, վարպետը կամուրջ կկապի...

Ասում են՝ հնում, այդպես եղել է...

* * *

Անցնում եմ փողոցով։ Ամենուրեք տախտակե ցանկապատերը փակել են մայթերը։ Դրանց հետևը, կիսակառույց շենքերի պատերի առաջ, երկարահասակ ժամապահների նման կանգնել են վերելակները։ Բայց նույնիսկ այդ վերելակների պարծենկոտ շռինդն էլ չի կարողանում լռեցնել փոքրիկ մուրճերի ձայնը.

— Չա՛ք, չո՛ւք, չա՛ք, չո՛ւք, չա՛ք...

Այդ քարտաշներն են տաշում, տաշում են շենքի քարե հագուստը։ Առաջին հերթին նրանք քառանկյուն քարերի եզրերն են տաշում, ու եթե քարը մոխրագույն գրանիտ է, քեզ թվում է, թե մուրճի տակից արծաթափայլ ժապավեն է դուրս գալիս։

Ես քարտաշ եմ։ Մեր քաղաքի տասնյակ շենքերի վրա կան իմ տաշած քարերը, իմ ժապավենները։ Դուք ամեն օր անցնում եք դրանց մոտով ու չեք էլ նկատում, ի՞նչ արած, աչքներդ սովորել են, իսկ ես չեմ կարող չնկատել, որովհետև ես քարտաշ եմ ու այդ ժապավեններն իմն են։ Դրանցից յուրաքանչյուրն իր պատմությունն ունի, ինձ համար թանկ ու սիրելի պատմություն։ Եվ եթե չեք ձանձրանա, ես ձեզ կպատմեմ դրանցից մեկը, իմ առաջին ժապավենի պատմությունը։

Յոթնամյա դպրոցն ավարտեցի։ Ավարտական վկայականը հանձնելիս դպրոցի վարիչը մորս ասաց.

— Լավն է ձեր տղան, նրանից գուցե և գիտնական դուրս գա, բժիշկ կամ դրա նման մի բան։

Ես այս չեմ ասում պարծենալու համար, դպրոցի վարիչը հենց այդպես էլ ասաց։ Ծնողներս էլ այդպես էին ուզում։

— Գիտնական չգիտեմ, բայց բժիշկ՝ անպայման.— ասում էր մայրս։

Մայրս այդպես էր ասում, որովհետև շատ ու շուտ-շուտ էր հիվանդանում, ու նրա կարծիքով, բժշկությունն աշխարհի ամենակարևոր գործն էր։

Բայց ես բժիշկ չդարձա։ Դեռ շատ փոքր հասակից ես ցեխից տնակներ էի կառուցում ու փայտից կամուրջներ կապում մեր բակի բարակ առվի վրա։ Եվ որքան էլ մայրս բժիշկ երազեր, ես դարձա քարտաշ։

Հայրս մթնած ու մռայլ տարավ ինձ իր ծանոթ քարտաշի մոտ։

— Մինա՛ս։

— Ի՞նչ կա, ուստա Թորգոմ։

— Բերի...

Հայրս գնաց։ Վարպետ Մինասը մի պահ գլխահակ թխթխկացնում էր առջևի քարին, հետո գլուխը բարձրացրեց, կարծես թե նոր միայն տեսավ ինձ ու կկոցած աչքերով խորամանկ ժպտաց.

— Բարով, հազար բարի, ախպոր տղա, էն քարը մի դեսը գլորի, տեսնեմ...

Եզանը կոտոշներից կբռնեն, ասում էր վարպետս։ Նա ինձ հենց այդպես էլ բռնեց, միանգամից, ամուր, անվերադարձ։

Երեկոյան գոտկատեղս նվում էր ցավից, ոտքերիս ներբաններն այրվում էին, ձեռքերս քերծվել էին, արյունոտվել։ Իսկ վարպետս կկոցած աչքերով դարձյալ խորամանկ ժպտում էր.

— Հը՛, ո՞նց էր։

— Լավ էր,—պատասխանեցի արցունքս հազիվ զսպելով։

— Լավը էգուց կերևա,—պատասխանեց վարպետս։

Նա կարծում էր, թե հաջորդ օրը ես այլևս չեմ գնա, բայց գնացի, չնայած մեջքս դեռ ցավում էր, ու ոտքերիս ներբաններն այրվում էին։

Այդ օրը վարպետս դարձյալ ժպտում էր, բայց մի ուրիշ տեսակ։

— Բարով, հազար բարի,—ասաց ու ինձ մեկնեց մի զույգ բրեզենտե ձեռնոց,—հագիր տեսնեմ։

Հագա, իսկույն շրջվեցի, որ գնամ քարերը մոտեցնեմ, սակայն նա ինձ կանգնեցրեց.

— Կա՛ց, բալամ, երեկ ուրիշ էր, քո աշխատանքն էդ չի։

Այդ օրն առաջին անգամ ես մուրճը ձեռքս առա։ Վարպետս բացեց իր բրեզենտե տոպրակը, երկու մուրճ հանեց։ Դրանցից մեկը սրածայր էր, մեկը տափակ գլխով, իսկ գլխին իրար հատող խոր-խոր ակոսներ կային։



— Ամեն քար,— ասաց վարպետս,— իր բնավորությունն ունի։ Մեկը խոնարհ է, մեկը՝ հակառակ։ Քարի բնավորությունը պիտի հասկանաս, սամթը բռնես։ Էս, զորօրինակ, քարի կարն է, մի էդ մուրճը վրա բեր, տեսնենք։

Ես սրածայր մուրճով հարվածեցի քարին, քարի եզրը թռավ։

— Ապրիս,— գովեց վարպետս,— դե հիմի էլ էս կողմը խփիր։

Ոգևորված խփեցի նրա ասած տեղը։ Մուրճս մեխի նման ծակեց քարը, խրվեց նրա մեջ, բայց քարի եզրը չթռավ։ Ես մեղավոր նայեցի վարպետիս, բայց նա կրկին առաջվա նման խորամանկ ժպտում էր։

— Էդ քո մեղքը չի,— ասաց,— էստեղից քարը չի կոտրվի, էստեղ կար չկա։

Առաջին դասս վերջացավ։ Նա իր մուրճն առած՝ կռացավ մի քարի վրա ու ինձ չնայելով, ասաց.

— Մի քար ջոկի, էդ գործիքներն ու քանոնն առ, ինչ որ ես անեմ, էն էլ դու արա։

Նա անկյունավոր քանոնով իր քարը չափեց, ես էլ իմը չափեցի, սրածայր [illegible]վ թռցրեց ավելորդ մասերը, ես էլ թռցրի, տափակ մուրճը ձեռքն առավ ու մանրիկ կտկտացնելով սկսեց եզրերի ժապավենը գծել, ես էլ սկսեցի։ Հասարակ բան էր թվում, բայց շուտով նկատ[illegible], որ վարպետս արդեն երրորդ քարի ժապավ[illegible] էր գծում, մինչդեռ ես առաջինի կեսն էլ դեռ չէի գծել։ Նկատեցի նաև, որ իմ ժապավենը վարպետիս գծածների նման ուղիղ ու հավասար չէ, ու երբ փորձեցի ուղղել, անզգույշ հարվածով քարը ճեղքեցի։ Հուզված նայեցի վարպետիս կողմը։ Նա դարձյալ աչքերը կկոցած խորամանկ ժպտում էր։

— Ուրիշ քար առ,— ասաց մեղմ ու հանգիստ։

Այդ օրը չորս քար փչացրի, չորսից ոչ մեկը շարելու համար պիտանի դուրս չեկավ։ Կեսօրվա բանթողին վարպետս նույն բրեզենտե տոպրակից հանեց ուտելիքը. հաց, պանիր, թարխուն ու խաշած ձու։

— Հացը դրած, գործն անիծած,— ասաց նա,— արի հաց ուտենք, ես էլ, դու էլ շատ աշխատեցինք։

Ես գիտեի, որ ոչ մի օգտակար բան չեմ արել, դրա համար էլ քիչ էր մնում լաց լինեի, բայց քաշվեցի հրաժարվել հացից։ Հետս բերած հաց-մացը միացրի վարպետիս ուտելիքին, հետո նստեցի իմ ջարդած քարերից մեկի վրա ու արցունքի հետ զոռով կուլ տվեցի հացի պատառները...

Դրանից հետո դեռ մի քանի օր էլ քար էի փչացնում։ Վարպետս մեղմ ու համբերատար բացատրում էր սխալներս.

— Էդպես էլ կլինի, դարդ մի՛ անի։

Մի օր հենց առավոտից ինձ համար մի սիրուն քար ընտրեցի, չափեցի, ձևեցի ու մուրճը ձեռքս առա։ Մինչև կեսօրվա բանթողը պտույտ էի գալիս իմ քարի շուրջը, զգույշ ու թեթև էի հարվածում, որ քարը չճաքի։ Մի ժամում մի կողմի ժապավենը հազիվ գծեցի։

— Չջարդվես, հոգուդ մատաղ,— աղաչում էի իմ քարին։

Հասա մինչև կեսը։ Ռոպեն մի անգամ չափում էի ժապավենի լայնությունը։ Հուզմունքից քրտնել էի, մատներս դողում էին։ Հիմա, հիմա կվերջացնեմ ու վարպետս կգովի, մտածում էի սրտի թրթռոցով։ Իսկ վարպետս կարծես թե այդ օրը ինձ չէր էլ նկատում։

Երբ երրորդ անկյունն էի տաշում, քարից մի կտոր թռավ։ Ես հազիվ զսպեցի ճիչս, աչքերս մթնեցին, մուրճը ձեռքիցս ընկավ։ Այդ վայրկյանին ամեն ինչ կտայի, միայն թե թռած կտորը դարձյալ իր տեղին կպչեր։

Կամաց-կամաց ուշքս վրաս եկավ, ու ես ուրախությամբ տեսա, որ կտրվածքը ժապավենին չէր վնասել...

Քարս պատրաստ էր։

— Վարպե՛տ,— կանչեցի հպարտությամբ։

Ինձ թվում էր, թե նա պիտի գրկի ինձ, ճակատս համբուրի, ինչպես լսել էի։ Բայց նա հանգիստ ասաց.

— Պրծա՞ր, լավ, դե մի գնա ջուր բեր խմենք։

— Դույլն առա ու կոտրված սրտով գնացի դեպի մոտիկ ծորակը՝ ջուր բերելու։ Երբ վերադարձա, վարպետս կանգնած էր իմ տաշած քարի մոտ, իսկ քարի վրա իմ գծած ժապավենն ավելի էր հղկվել ու գեղեցկացել։ Ես գլխի ընկա, որ վարպետս մի քիչ աշխատել էր իմ գնալուց հետո։

Ջուրը խմեց։

Օխա՜յ, ջրի բարին արևդ,— ասաց ու ձայն տվեց քար կրող բանվորին։— Գառնի՛կ, Գառնիկ, էս քարը տարեք։ Ուստա Համազին ասա, թող շենքի ճակատին շարի, էս ուրիշ քար է...

Հետո ժպտաց, բաց արեց բրեզենտե տոպրակը, ուտելիքը հանեց...

Ուտում էր ու ժպտալով պատմում.

— Ասում են՝ հնում մեկը մի անգամ կանգնել է ոսկերիչ վարպետի լուսամուտի առաջ...

Բայց ես այդ առակն արդեն պատմել եմ ձեզ, ուրեմն մնա՛ք բարով, մնացածը ինքներդ գիտեք...



## ՄԱՅԻՍ՞Ն Է ԳԱԼԻՍ

ՎԻԿՏՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆ

Հավքերը նախշուն
Համերգ են տալիս.
— Ջա՜ն, ճամփա բացեք,
Մայիսն է գալիս:

Քնքուշ վարդերն են
Ժպտում ամենքին.
— Ջա՜ն, մեր գեղեցիկ
Մայիսն է գալիս:

Մանուկներն ուրախ
Ծափիկ են տալիս.
— Ջա՜ն, մեր սիրելի
Մայիսն է գալիս:

Ճերմակ աղավնին
Թևին է տալիս.
— Ջա՜ն, խաղաղության
Մայիսն է գալիս:

## Գարուն

ՀՈՎՀ. ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Անձրևն է մաղում վերից,
Կաթիլ-կաթիլ ծծվում հողում.
Մանուկները Նուրբի ձորից
Ծաղիկներ են ահա բերում:

Ծաղիկներ են բերում փնջած,
Աղջիկ-տղա այսպես խնդուն,
Ասես մի-մի գարուն գրկած,
Ուրախ-ուրախ տանում են տուն:

1

Ութերորդ դասարանում մեզ մոտ սովորելու եկավ Շավարշ անունով մի տղա, որին մենք կրճատ՝ Շավո էինք կանչում։ Շավոն մոտիկ Նորավան գյուղից էր և մեզ էլ ինչ-որ հեռու բարեկամ էր գալիս։ Սկզբից ևեթ նա ինձ դուր եկավ իր բարի և փոքր-ինչ քաշվող բնավորությամբ, ու մենք, քանի գնաց, մտերմացանք։ Ես այն ժամանակ սկսել էի ոտանավոր գրել, բայց թաքուն էի պահում։ Առաջինը Շավոն էր, որին հայտնեցի իմ «սրբազան գաղտնիքը»։ Պարզվեց, որ նա էլ է թաքնված «բանաստեղծ»։ Այդ հանգամանքը մեզ ավելի մտերմացրեց...

Վատ ժամանակներ էին. պատերազմ էր. շատերի հայրերը բանակում էին, շատերը կիսաքաղց էին, ոմանք՝ որբ։

Շավոյի հորն էլ էին տարել, և տան հոգսն ընկել էր ոչ միայն մոր, այլև հենց իր՝ Շավոյի վրա, քանի որ տան ամենամեծ երեխան նա էր։

Շավոն դասերից հետո գնում էր դաշտ, իսկ դասերը սովորում էր երեկոյան։

Վատ էին ապրում։ Նրանց տուն գնալիս մայրս երբեմն բան-ման էր դնում հետս, ասենք՝ հաց, կարտոֆիլ, կճուճով մածուն։ Տանում էի ու Շավոյից թաքուն տալիս փոքր քրոջը՝ Աշխենին։ Շավոն հպարտ էր, թե որ իմանար, կխռովեր հետս, կնեղանար։ Դպրոցում էլ ձգտում էի, ինչպես ասում են, «թև ու թիկունք» լինել նրան, որ մեր գյուղացի տղերքը խաթրին չկպչեն։ Նա վտիտ ու կարճլիկ տղա էր, մի քիչ էլ վախկոտ։ Ճիշտն ասած, ես էլ մի առանձին ուժի տեր չէի, բայց եղբորս՝ Սերոժի թևով թռչում էի։ Նա անմրցակից կռվարար էր...

Այսպես լավ ընկերներ էինք ես ու Շավոն։ Բայց ահա մի դեպք եկավ պղտորելու մեր պատանեկան անխառն բարեկամությունը։

2

Մեր և Նորավանցի տղերքը՝ հին սովորությամբ, ամեն անգամ դպրոցում լիներ, թե գյուղամիջում, դաշտում, թե ակումբի առաջ, մի առիթ գտնում էին, որ իրար ծեծկռտեն։

Ինձ շատ էլ չէր վիճակվում կռիվների մեջ ընկնել, որովհետև չէի խառնվում կռվարար հասակակիցներիս։ Եթե տանն էի լինում, կամ կարդում էի, կամ գտնում մի զբաղմունք. տրեխ էի կարում, կոշիկ կարկատում, մորս էի օգնում տան գործերում, որովհետև քույրս ամուսնացել էր, և ես մի

տեսակ փոխարինում էի նրան։ Դրա համար, իհարկե, քիչ ծաղր ու ծանակ չէի կուլ տալիս Սերժի կողմից, որն իրեն տղամարդ էր համարում և «կլնկա գործերի» չէր խառնվում։

Նա միայն կովը պահելուն էր համաձայնում և այն էլ հերթով, մի օր՝ ես, մի օր՝ ինքը, կամ առավոտը՝ ես, կեսօրից հետո՝ ինքը։

Մի օր հերթն իմն էր, վճռեցի կեսօրին կովը դաշտից տուն չբերել։ Երբ ստվերն դարձավ չորս ոտնաչափ (ստվերը մեզ համար ժամացույցի պես մի բան էր), կովը տարա Նորավանի առվի մոտ կապեցի ուռենուն, շորերս հանեցի, մտա ջուրը։ Սաստիկ շոգ էր, իսկ ջուրը՝ հաճելի զով։

Պառկում էի մեջքիս, ջուրը քշում տանում էր մինչև ոլորանը, այնտեղից էլ նորից ետ էի գալիս չփչփացնելով, «հո՜ւ»—անելով։ Մի անգամ էլ, երբ

# Երկու ամպ

Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

հասա ոլորանին ու շուռ եկա, տեսնեմ՝ շորերս ջրի վրա փռված գալիս են։ Գլխի ընկա, որ վերևում մարդ կա։ Շորերս գրկեցի, ջրից հանեցի։ Տրեխներս չկային։ Ափ նետվեցի և, փուշ ու խոտերի վրայով ցատկոտելով, վազեցի դեպի կովը։ Առվի այն ափին, Նորավանցի երկու տղա էին կանգնած. մեկը մինչև ազդրերը ծալել էր շալվարը։ Ես դրան դեմքով ճանաչում էի։ Մեր դպրոցից էր՝ կարմիր գլխով։

— Արա՛, լոքո էր գալի, բռնեցի՞ր...—ծաղրեցին ինձ նրանք։

Ես զայրույթս զսպած, լեզուս ինձ քաշած, կովը արձակեցի, նոր միայն դարձա նրանց.

— Ես ձեզ լոքո ցույց կտամ, սպասեք հալա...—ասացի ու շորերս թևիս տակ տված՝ քշեցի փախա։ Երբ մի քիչ հեռացել էի, նրանց խճաքարերը վզզալով անցան գլխիս վրայով, բայց չկպան։

3

Մյուս օրը դպրոցի բակում բռնեցի կարմիր գլխով տղային։

— Էս կողմն արի, բան եմ ասում։

— Ի՞նչ։

— Ասում եմ՝ ե՛կ...

Մի լավ ծեծկեցրի։ Նա, պարզ է, ձեռք չէր բարձրացնի ինձ վրա, որովհետև դժվար էր ասել՝ ինձնից ուժեղ էր, թե չէ։ Բացի այդ՝ Նորավանցին առվից անցավ թե չէ, ինչպես ընդունված է ասել՝ «կատու» է դառնում։

Նա գնաց ու քիչ հետո, տեսնեմ՝ բերել է իրենց գյուղի Գընդըլ Պապանին, չաղ, կոճղի նման մի տղա, գլորուկի պես կլոր գլխով։

— Է՜յ,—դարձավ ինձ Գընդըլը,—դո՞ւ ես սրա խաթրին կպել։

— Հենց հա՛,—ասացի ես համարձակորեն,—քե՞զ ինչ։

— Ինձ ի՞նչ։—Ձեռքս բռնեց—ոլորեց, շրջեց մեջքի վրա և հետևից ծնկով մի հատ հասցրեց, ձեռքս բաց թողնելով։

Երեսնիվայր փռվեցի առվույտի մեջ։

Մինչ այդ, մեր գյուղացի տղերքը եղբորս՝ Սերոժին իմաց տվին։ Եկավ Գընդըլին քաշեց մի կողմ, խոսեցին ու վճռվեց.

— Իրիկունը։

— Որտե՞ղ։

— Աղամենց խարաբի մոտ։

— Լա՛վ։

4

Դեռ նոր էր մթնել, երբ իրար ձայն տվին, հավաքվեցին գյուղի բոլոր մարտունակ





տղերքը։ Գյուղից դուրս եկանք։ Նորավանի առվի ափին, այգիների մեջ մի լքված հոլիկ կար, որի պատերն էին մնացել միայն, այն էլ կիսով չափ։ Դա Աղամի խարաբան էր։ Իսկ դրա կողքին առվույտի հնձած արտն էր, ուր սովորաբար տեղի էին ունենում մեր ճակատամարտերը։

Դեռ հեռվից լուսնի լույսով նշմարեցինք հոլիկի մոտ ու պատերին նստած նորավանցի տղաներին։

Իրար սիրտ տվինք ու մոտեցանք։

Մի քանի խոսք չասած, Սերոժն ու Պապանը տվին իրար։ Սկզբում մեկը մյուսին չէր զիջում։ Ես գիտեի, որ հաղթանակը Սերոժինն է, բայց Պապանը խորամանկություն բանեցրեց. «ոտք տվեց» ու Սերոժին գցեց գետին։ Սա արդեն «նամարդություն» համարվեց մերոնց կողմից և առիթ դարձավ ընդհանուր հարձակման։ Իրարանցման ժամանակ, երբ դժվար էր որոշել յուրայինն ու հակառակորդը, հանկարծ աչքիս ընկավ, որ երեք հոգի թափել են եղբորս վրա ու տալիս են։ Ձեռքիս մի փայտ կար, ֆռռացրի, որ խփեմ դրանցից մեկին, մեկ էլ հետևիցս մեկը ճչաց.

— Վա-ա՜խ…

Ես առանց ետ նայելու, սկսեցի հարվածներ տեղալ Սերոժին կալմեջ արած տղերքի վրա։ Նրանք թողին Սերոժին ու փախան։ Շուռ եկա, տեսնեմ մեկը թմբին նստել, գլուխն առել ափերի մեջ, լալիս է։ Մութ էր, կարծեցի մերոնցից է։ Կռացա, տեսնեմ, Շավոն է։ գլխից արյուն էր գալիս։ Թևերս թուլացան. փայտը ձեռիցս սահեց ընկավ…

— Շավո, էդ դու՞ ես…

— Ես եմ, հա,—մորմոքալով ասաց նա։ Ես գլխի ընկա, որ նա չգիտի, թե ով է խփել։ Դա, մի կողմից, լավ էր։ Բայց գլուխս կոտրել էի…

Հենց որ արյուն երևաց, ուրեմն պետք է մարտն ավարտված համարել։ Կռվողները բաժանվեցին։ Նորավանցիները շրջապատեցին Շավոյին, իսկ մերոնք քաշվեցին մի կողմի վրա, խմբվեցին ու ճամփա ընկան դեպի գյուղ։ Ճանապարհին ամեն մեկը պարծենում էր իր քաջագործություններով։

Ես լուռ էի ու պարտված։

5

Ամբողջ գիշեր շուռ ու մուռ եկա տեղիս մեջ։ Քունս չէր տանում։ «Էս ի՞նչ եղավ, ախր ինչո՞ւ էսպես եղավ։ Ախր Շավոն ի՞նչ գործ ուներ էնտեղ… Վաղը Շավոն դպրոց կգա գլուխը կապած, տխուր-տրտում։ Չէ՛, լավ է, որ վաղը հանգստի օր է։ Մյուս օրն էլ տանը կմնամ, կասեմ գլուխս ցավում է, հիվանդ եմ։ Թո՛ղ…»

Մյուս օրը կովը պահելու հերթը Սերոժինն էր։ Ես մնացի տանը։ Վերցնում եմ, որ կարդամ, բան չեմ հասկանում, ձեռքս մի բանի չի կպչում. Թևերս թույլ են, ուշք ու միտքս դպրոցն է, աչքերիս առաջ՝ Շավոյի կապած գլուխը։ Կեսօրին մայրս կանչեց, թե արի ընկույզը թափ տուր, հավաքեմ։

Ես լուռ ու մունջ վերցրի փայտը ու գնացի բարձրացա ընկուզենին։

— Շրըխկ հա շրը՛խկ, շրըխկ հա շրը՛խկ,—կարկուտի նման թափվում են հասած ընկույզները ու կճեպահան լինում գետնի վրա։ Բայց ուշքս վրաս չի. մեքենայաբար խփում եմ աջ ու ձախ։ Մեկ էլ, ոտքիս տակի ճյուղը ճռռաց ու պոկվեց. ես ներքևի ճյուղերին քսմսվելով թրմփացի գետին, թարխունի մարգերի մեջ։

Մայրս լեղաճաք վրա հասավ։

— Վազգե՜ն ջան, Վազգե՜ն ջան, լեզուս պապանձ-




— Հե՛չ,—ասաց Շավոն,—ոտքին կպա, ցավեցրի...

վեր բանի չդնեի։

Ես հազիվ մզզացի. քթիցս արյուն էր գալիս։ Ոտքս էլ էր ցավում։ Մայրս շտապ ջուր տվեց, որ վախս անցնի։ Հետո մի քիչ լավ զգացի, վեր կացա, լնգլնգալով գնացի տուն, պառկեցի թախտին։

Քիչ անց, ոտքս սկսեց սաստիկ ցավել։ Մայրս վազեց Անխլու հետևից։

Անխլի Մարգարը, ութսունն անց մի բարձր ու կռացած ծերունի, եկավ, ոտքս առավ ափերի մեջ, տնտղեց, տնտղեց, գտավ, որ կոտրված է։

Քիչ անց՝ ոտքս կապկպված, ծանրացած, տընքում էի թախտի վրա։

6

Է՜հ, ինչ արած, մտածում էի, գուցե բարին սա էր։ Երկար ժամանակ դասի չեմ գնա, չեմ տեսնի Շավարշի կապած գլուխը։

Մի երկու օր դպրոց չգնացի։ Հետաքրքրվել էին, իմացել, որ ծառից ընկել եմ։

Երրորդ օրը ինձ տեսնելու եկան մեր դասարանից մի քանի հոգի։ Նրանց հետ էր նաև իմ ընկեր Շավոն, գլուխը փաթաթած։ Ես չէի կարողանում ուղիղ նայել Շավոյի աչքերին։ Չէի կարողանում կռահել՝ նա գիտի՞, որ ես եմ խփել։ Տղաները հարցուփորձ էին անում պատահարի մասին, խոսում դեսից-դենից, աշխատում ծիծաղեցնել, բայց իմ ծիծաղը չէր գալիս։

Եվ ահա Շավոն մոտեցավ, նստեց մոտս, որ հետս խոսի։ Ես հայացքս հեռացնում էի նրանից։ Նա նկատեց այդ և շշնջաց.

— Վազգեն, ինչո՞ւ ես բանի տեղ դնում, հո դիտմամբ չէ՞ր... Իմ աչքերը լցվեցին, շուռ եկա բարձին։

Տղաներն էլ գուցե զգացին, որ մի բան կատարվեց, հարցրին.

— Էդ ի՞նչ եղավ։

* * *

Վաղուց անցած գնացած բաներ են, ինչ որ պատմում եմ։ Այն օրերից շատ բան է փոխվել։ Փոխվել է Շավոն, փոխվել եմ ես։ Նա հիմա մեր գյուղում զոոտեխնիկ է, ամուսնացել, երեխաների հայր է։

Հիմա, երբ գյուղ գնալիս հանդիպում եմ նրան, նստում խոսում ենք անցած օրերից։ Մեր հուշերի մեջ ամեն բան լավ է, մենք լավ ընկերներ ենք եղել։ Բայց երբ նայում եմ նրա դեմքին, երբ նրա ճակատին տեսնում եմ իմ թողած սպին, ամոթի քրտինքն է պատում իմ ճակատը։ Մենք չենք խոսում այդ մասին։ Այդ մասին պատմում է ինքը, իմ թողած սպին։

Վաղուց, շատ վաղուց է լավացել նրա կոտրված ճակատը, կապույտ սպի է մնացել՝ վրան դրված խանձուրից։

Մի սպի էլ ես ունեմ, որ չի երևում, միայն ես եմ տեսնում. դա իմ սրտում է, իմ խղճի վրա...





# «ԳՐԻՄ ԵՂԲԱՅՐՆԵՐԸ» ՓՐԿՎԵՑԻՆ

*Ռ. ՄԵԼԻՔ-ՍԱՀԱԿՅԱՆ*

*Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ*

Պատերազմի բոթը ես ընդունեցի ջութակը ձեռքիս, պիոներների պալատում։ Ինձ զարմացրեց մեր բարի ուսուցչի սաստիկ հուզմունքը. ի՞նչ մեծ բան է կռիվը. որ նա այդչափ խուճապահար է լինում։ Չէ՞ որ այդ ժամանակ են արկածներն սկսվում։

Սակայն հենց սկզբից սիրտս կծկվեց. երբ մայրիկը հեկեկալով կախվեց ռազմաճակատ գնացող հորս վզից։

Պատերազմը աղետ է։ Այդ ես հասկացա, երբ Ղրիմից եկավ քեռուս մահվան բոթը։ երբ հայրիկիս նամակները ուշանում էին. մայրիկը դառնում էր մռայլ և անխոս. տատիկն անիծում էր պատերազմ ստեղծողին և բանակցություններ վարում աստծո հետ՝ հորս կյանքի համար, իսկ մենք մոռացած մեր զվարճանքները՝ խոսում էինք կիսաձայն։

Մահվան սարսուռը առաջին անգամ անցավ մարմնովս, երբ դպրոցի մոտ ընկած ռումբի պայթյունից թափվեցին մեր լսարանի պատուհանների ապակիները։ Թվաց թե փուլ եկավ առաստաղը։ Աղջիկները ճչացին., իսկ ես բնազդաբար գլուխս ներս քաշեցի ուսերիս մեջ։

Հետագայում մենք ընտելացանք ռմբակոծություններին: բայց մայրիկին չվշտացնելու համար Տիգրանիկի հետ խցկվում էինք մահճակալի տակ։

Վիկտորը ինձանից մեծ էր։ Ռմբակոծության ժամանակ նա, հրձիգ ռումբերից առաջացող հրդեհի վտանգը կանխելու համար. մեծ եղբոր՝ Իգորի հետ իրենց տան կտուրի վրա հերթապահում էր։

Մի անգամ. նա ինձ ցույց տվեց այդպիսի մի ռումբի սևացած մնացորդները և սկսեց պատմել, թե ինչպես խլեց ֆշշացող ռումբը և կոխեց այն ավազով լիքը արկղի մեջ: Ներս մտավ Իգորը և լսելով Վիկտորի պատմությունը թեթև ժպտաց։ Վիկտորը կարծես շփոթվեց և պատմությունն ավարտեց «ես»-ի փոխարեն «մենք» օգտագործելով։ Ինչպես երևում էր՝ փչում էր։

Բայց չկա չարիք առանց բարիքի։ Երբ ֆաշիստական զորքերը զավթեցին մեր քաղաքը. նրանք նույնպես անուշադրության մատնեցին քաղաքի ծայրամասում ընկած մեր տնակը։ «Սատանի ականջը խուլ,—ասում էր տատիկը,—գոնե դրանց երեսը չենք տեսնում»։

Սակայն սատանան երևի հիանալի լսողություն ուներ։ Ահա մեր բակը մտավ բարձրահասակ մի սպա և առանց այլևայլության կրակեց ուղղակի մեր շան դնչին. քանի որ վերջինս նրան չէր թողնում տուն մտնել։ Սպան հիասթափվեց մեր տան հարմարություններից և հեռացավ. թողնելով մեր չորքոտանի ընկերոջ դիակը։ Ես ատեցի այդ այլանդակ սպային: Այդպես էլ նա տպավորվեց հիշողությանս մեջ։

Հետագայում պարզվեց. որ ֆաշիստները նույն սառնասրտությամբ սպանում են նաև մարդկանց։

Վիկտորի հետ ձեռք-ձեռքի տված քայլում էինք կենտրոնական փողոցով։

— Հրեանե՜րը...—տագնապահար շշնջաց մեկը: Նայեցինք ետ՝ գալիս էր մի հոծ բազմությո՜ւն՝ զինվորներով շրջապատված։ Մեծամասնությունը կանայք. երեխաներ և ծերեր էին։ Ոմանք արտասվում էին։

Հանկարծ բազմության մեջ երևաց ջութակի մեր բարի ծերուկ ուսուցիչը: Նրա ձեռքից բռնած քայլում էր ութ տարեկան մի աղջիկ՝ հավանաբար թոռնիկը: Ես փորձեցի առաջ խցկվել. որպեսզի բարևեմ ուսուցչին. բայց Վիկտորը քաշեց թևիցս։

— Գժվե՞լ ես,—շշնջաց նա. զննելով իմ սևամազ գլուխը,—քեզ էլ հրեայի տեղ կընդունեն ու կքշեն:

Հաջորդ օրը լուր տարածվեց. որ նրանց բոլորին կոտորել են գիշերով և լցրել փոսերը:

Եվ այսպես, ավելի ատեցինք բոլոր ֆաշիստներին։

Ահա թե ինչպիսին էր պատերազմը...

Կյանքը կտրուկ դուրս էր եկել իր հունից։ Փակվել էին դպրոցներն ու պիոներների պալատը, լռել էր երեխաների զվարթ աղմուկը։

Տանը մայրիկս վրդովված պատմում էր հարևանուհուն.

— Անցնում եմ մեր շրջանային գրադարանի կողքով և մեկ էլ. ի՞նչ եք կարծում. ո՞վ է նայում պատուհանից...

— Ֆաշիստները,— ենթադրեց հարևանուհին։

— Ո՛չ, սիրելիս, նրանց ձի-ե՛-րը,— հեգնելով պատասխանեց մայրիկը։

— Ի՞նչ բարբարոսություն։

Մենք հեռացանք խորհրդակցության։

— Հարկավո՛ր է պայքարել,— վճռաբար հայտարարեց Վիկտորը։

Ես ու Տիգրանիկը համաձայնվեցինք նրա հետ։

— Կփրկենք ամենաարժեքավոր գրքերը և կպահենք ձեղնահարկում, մինչև որ մերոնք վերադառնան,— որոշեց Վիկտորը։

Մեզ դուր եկավ նրա ծրագիրը։ Տիգրանիկը հայտարարեց, որ ինքն էլ է գալիս մեզ հետ, մի շատ արժեքավոր գիրք փրկելու համար։ Պարզվեց, որ դա Անդերսենի հեքիաթների գիրքն է։

Երբ մենք զգուշորեն ներս մտանք գրադարանի դռնից, այնտեղ գերմանացի զինվորները մաքրում էին աժդահա ձիերին, իսկ մի քանի տեղացիներ աղբն էին հանում բակ։ Ամենուրեք թափված էին քրքրված գրքերը, իսկ բակում զինվորներից մեկը ճաշ էր եփում։ Կաթսայիկը կախված էր խարույկի վրա, իսկ կրակի մեջ կարծես ցավից դանդաղորեն ծալվում ու գալարվում էին այրվող գրքերը։

Այնտեղ էին Ժյուլ Վեռնը և Պուշկինը, ռադիոսիրողի գրքույկները և «Հետաքրքրաշարժ ֆիզիկան»... մի խոսքով մեր սիրած բարեկամները, որոնցով տարվում էինք, ոգևորվում, երազում։

Զինվորներից մեկը նկատեց մեզ և կատաղի ձայնով կարծես ձիերի վրա գոռաց. «Կորե՛ք, անիծյալներ»։ Ես վախեցա, բայց Վիկտորը բռնեց ձեռքիցս և զինվորին խեղճ ձայնով ասաց. «Ունզերե ֆատեր»— և ցույց տվեց բակի կողմը, այսինքն՝ մեր հայրերը բակում աշխատում են։ Զինվորը հավատաց և ձեռքով նշան արեց, որ շտապենք։

Հարևան սենյակն անցնելու համար հարկավոր էր ձիերի տակով անցնել։ Ես վախենում էի, որ ձիերը մեզ քացի կտան։ Վիկտորը բացատրեց, որ բեռնակիր ձիերը հանգիստ են լինում։ Եվ իսկապես ձիերը խելոք էին։ Մենք անցանք հարևան սենյակը, որտեղ անկանոն կերպով թափված էին հարյուրավոր գրքեր։ Մեր աչքերը չորս եղան, պատրաստ էինք բոլորը տանել։ Առաջինը մեր աչքին ընկավ Գրիմ եղբայրների հեքիաթների նկարազարդ գրքույկը։ Վիկտորը դա թաքցրեց ծոցում՝ գոտու տակ։

— Տիգրանիկի համար,— շշնջաց նա։

Ես խլեցի ռադիոսիրողի գրքույկը և ֆիզիկայի դասագիրքը, իսկ Վիկտորը՝ Դյումայի «Երեք հրացանակիրները» և հանրագիտական բառարանը։

Նա ասում էր, որ եթե հանրագիտարանը կարդաս, ամեն ինչ կիմանաս։

Արդեն ուզում էինք դուրս գալ, երբ նկատեցինք, որ հարևան սենյակում քթի տակ երգելով մի զինվոր է անցուդարձ անում։

— Գնանք մտնենք ձիերի փորերի տակ, մինչև որ նա դուրս գա սենյակից,— փսփսաց Վիկտորը։ Սողացինք ձիերի տակ և պպզեցինք։

Հանկարծ մի ապտակ ցնցեց ինձ.

— Թո՛ւ, սատանան տանի, ձիու պոչն էր։ Հետո ձին գլուխը թեքեց և տխուր ողբալով նայեց մեզ։

— Տո՛ւտ,— Վիկտորը քաշեց ձեռքիցս,— զինվորը դուրս գնաց։

Մենք վազելով անցանք հարևան սենյակը, այնտեղից բակ և դեմ առ դեմ բախվեցինք զինվորի հետ... Նա մի պահ վերից վար նայեց մեզ։

— Ֆֆիզի՞կա,— կակազեցի ես ցույց տալով գիրքը։

Պատասխանի փոխարեն, նա խփեց մեր ձեռքերին։ Գրքերը թափվեցին գետնին։

— «Վե՛գ» — այսինքն թե «կորե՛ք» — բղավեց նա։

Երբ տուն հասանք, Վիկտորը ինքնաբավական խփեց իր փորին և ծիծաղեց։

— «Գրիմ եղբայրներին» հո՛ ազատեցինք։

Տիգրանիկը շատ գոհ էր մեր արշավանքից, իսկ ինձ սփոփելու համար Վիկտորը հայտարարեց.

— Պայքարը շարունակվում է։



# Արամ Խաչատրյան

Ձեզանից ո՞վ չի լսել Արամ Խաչատրյանի երաժշտությունը։ Ամեն օր առավոտյան, երբ դուք, երեխաներ, դպրոց պիտի գնաք, ձեզ արթնացնում է Արամ Խաչատրյանի գրած հիմնը։ Իսկ ես լսել եմ նրան վաղուց, շա՜տ վաղուց, երբ ձեր հասակին էի, այն ժամանակ առաջին անգամ մենք լսեցինք Արամ Խաչատրյանի անունը «Պեպո» կինոնկարը դիտելիս։ Ողջ քաղաքը երգում էր.



Դամբը ձեռքիս ջուրն եմ մտնում,
Ձեռ ու ոտս թաց եմ անում,
Խլբլդալեն լոթի ձկներ,
Բազարումը լաց են ըլում։

*Չգիտեմ, ճիշտ է, թե ճիշտ չէ այս բառատողը, բայց մենք այն ժամանակ հենց այսպես էլ երգում էինք։*

Հետո ես նրան լսեցի, երբ պատանի էի, լսեցի նրա «Ջութակի համերգը» ու ինձ թվաց, թե մեկը երաժշտության թևերին ինձ տանում է հեռու, գարնանը ձնած սարեր եմ տեսնում, տեսնում եմ արծաթյա մի բարակ առու, ամպամած երկնքի մեջ մխրճված բարդիներ։ Իսկ դուք գիտե՞ք, երեխաներ, որ լավ երաժշտությունը հնարավոր է նկարել։ Ես մի նկարիչ ընկեր ունեմ, երբ նկարում է՝ մագնիտաֆոնով երաժշտություն է լսում, կամ ինչ-որ բան է սուլում ու երբ նկարում է, գույները ընտրում է երաժշտության տրամադրության հետ համահնչյուն։ Հետո ես մի անգամ մի պատանու նկար տեսա, որը նկարել էր Արամ Խաչատրյանի «Գայանե» բալետի «Սրերով պարը». թերթի վրա սրեր էին և մարդիկ, որոնք տարբեր շարժումներ էին պատկերում։ Այո՛, այո՛, հենց այդպես է, լավ երաժշտությունը կարելի է և՛ նկարել, և՛ խոսքերով պատմել, իսկ լավ նկարչությունը կարելի է երաժշտությամբ վերանկարել։ Եվ իզուր չէ, որ Արամ Խաչատրյանը իր երաժշտության համար օգտագործում է մեծ նկարիչ Մարտիրոս Սարյանի գույները։ Ամեն անգամ, երբ լսում ես Արամ Խաչատրյանին, թվում է, թե նրա մեղեդիները ծնվել են Մարտիրոս Սարյանի կտավներից, իսկ այդ երկու մեծ վարպետները իրենց գույները վերցրել են մեր հայրենիքից՝ Հայաստանից, մեր ժողովրդից, հայ ժողովրդից. միայն թե Մարտիրոս Սարյանը այն կախարդն է, որ առաջինը բացեց այդ գանձարանի դռները, իսկ Արամ Խաչատրյանը երգեց այդ հարստության մասին երաժշտությամբ։

Ես համոզված եմ, որ ձեզանից շատերը կարդացել են Ջովանիոլիի «Սպարտակ» գիրքը, ես գիտեմ, որ ձեզանից շատերը մտքով նկարել են Սպարտակին, կամ նրա հետ կռվել են Վեզուվի բարձունքներում՝ հռոմեական լեգեոնների դեմ, բայց գիտեմ նաև, որ ձեզնից և ոչ մեկը երգով, երաժշտությամբ չի պատկերել Սպարտակին։ Իսկ գիտե՞ք, որ դա հնարավոր է. գիտե՞ք, որ երաժշտությամբ արդեն ստեղծված է Սպարտակը և նրա ժամանակը։ Դա կատարել է հայ մեծատաղանդ կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը։ Վերջերս ես լսում էի «Սպարտակ» բալետից հատվածներ և, չգիտես ինչպես, ինձ հանկարծ թվաց, թե ես տեսնում եմ հին Հռոմը, ստրկատիրական Հռոմը, տեսնում եմ արևով ողողված մեծ կրկեսի հրապարակը. տեսնում եմ, թե ինչպես գլադիատորները կռվում են



Մի տեսարան
Ա. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ «Գայանե» բալետից
Լուսանկար՝ Վ. ԱՄԱՅԱՆԻ

մեկը մյուսի դեմ, կռվում են գազանների դեմ, կռվում են, որ կրկեսի օթյակներում նստած Հռոմի քաղաքացիները ուրախանան, հրճվեն։ Ինչ-որ տեղ երաժշտության միջից մռնչաց առյուծը, հետո հնչեցին նուբիական զանգակները և այդ զանգակների երաժշտության միջից ինձ թվաց, թե տեսնում եմ Սպարտակին, որը թիկնոցն ուսին գցած՝ գիշերով անցնում էր Հռոմի փողոցներով, գնում էր հանդիպելու գլադիատորներին, գնում էր բորբոքելու ազատության կրակը։

Երաժշտական մի ուրիշ դարձվածք ինձ տարավ Կապուա քաղաքը, որտեղ ապստամբեցին գլադիատորները։ Սրերի զարկերի ձայնը, փողհարների պղընձյա ղողանջները կարծես պատմում էին ապստամբած գլադիատորների մասին և այդ բոլորի մեջ տեսնում էի Սպարտակի երաժշտական դիմանկարը, այո՛, դիմանկարը, որովհետև երաժշտությունն էլ է կարողանում նկարել։

Զարմանալի երաժշտություն է «Սպարտակ» բալետի երաժշտությունը, այնքան հայկական է և միաժամանակ այնքան իտալական, գալլական, թրակիական. այնքան հին է, որ թվում է, թե ավելի նոր չի կարող լինել, և հենց այս բոլորն է, որ Սպարտակին դարձնում է բոլոր ժամանակների ապրող, կենդանի հերոս, որը կռվել է Իտալիայում ստրկատիրական Հռոմի դեմ, որը կռվում է Աֆրիկայում նեգրերի ազատագրման համար, ընդդեմ իմպերիալիզմի։

Սպարտակը մինչև հիմա ապրում էր գրքով, խոսքով, այժմ նա ապրում է նաև երաժշտությամբ, և դա արեց հայ մեծատաղանդ կոմպոզիտոր Արամ Խաչատրյանը։ Հենց դրա համար էլ նա արժանացավ ամենամեծ մրցանակի՝ Լենինյան մրցանակի։

ՌԱՖԱՅԵԼ ԱՐԱՄՅԱՆ



## ՄԱՅԻՍՄԵԿՅԱՆ

ՆԵՐՋԱՆԻԿ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Մայիսն է քայլում փողոցով այսօր.
Որքա՞ն խնդություն,- ծաղիկներ որքան.
Ու փողփողում են դրոշներ բոսոր
Շարքերի առջև՝ կուռ ու հաղթական:

Քաղաքը ասես հրդեհվել է վառ
Խաղաղ ծփացող ալ դրոշներից.
Շարասյուներն են անցնում խանդավառ.
Երգն է զրնգում, թևածում նորից:

Տարիներ առաջ այսօրվա համար.
Ո՜, որքան արյուն ու կյանք են տվել.
Պայքարներում թեժ եղել են համառ
Պապերը մեր քաջ, հայրերն անվեհեր:

Աքսորում, բանտում, հյուսիսում հեռու
Այսօրվա հուրն են նրանք անթեղել.
Չեն լքել գիրքը, չեն եղել հլու.
Կրակը հոգու՝ միշտ վառ են պահել:

Եվ այդ կրակը, որպես դրոշակ.
Պարզած գլխից վեր քայլում ենք հիմա.
Եվ չենք մոռանա երբեք մենք նրանց.
Որոնք ընկել են այսօրվա համար:

# ԴՈԿՏՈՐ ԲՈՄԲՈԼՈՅԻ ՆՎԵՐԸ

*Կ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ* *(Գիտա-ֆանտաստիկական պատմվածք)* *Նկ. Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆԻ*

Իմ բնակարանը գտնվում է Լաբիկյանի փողոցի ծայրի շենքի հինգերորդ հարկում: Սենյակիս պատուհանից երևում է կոլխոզը, ու մեկ էլ կապույտ երկինքը: Թեկուզ հենց այս երկուսի համար էլ արժե ապրել իմ փոքրիկ սենյակում, որի մի կեսը ինձ ծառայում է որպես լաբորատորիա: Էժան կտորից պատրաստած շիրմայի այն կողմում գտնվում են իմ աշխատասեղանները, էլեկտրական վառարանը և ջուլհակի մի փոքրիկ դազգահ: Սենյակի մյուս կեսը զբաղեցնում են մահճակալս, հավաքովի ճաշասեղանը և աթոռը, որի թիկնակը վաղուց է կոտրվել: Անկյունում դրված պարկերի մեջ գտնվում է իմ հարստությունը: Դրանք սովորական քարակտորներ են, բազալտի քարակտորներ: Ես ինքս եմ հավաքում դրանք: Ամեն անգամ, երբ պարկի ծանրության տակ կքած մտնում եմ բակ, ջրավազանի մոտ խաղացող երեխաները սկսում են աղմկել: Նրանք գոռում են, ծիծաղում ու երբեմն էլ նույնիսկ մանրիկ քարերով աշխատում են հարվածել ինձ: Դե, երեխաներ են... Ի՞նչ կարող եմ անել: Նրանք պատահաբար իմացել են, որ ես բազալտի քարակտորներ եմ հավաքում, և դրա համար էլ ուզում են ծաղրել ինձ: Ես միայն ժպտում եմ բեղերիս տակից ու առանց ուշադրություն դարձնելու, շտապում եմ դեպի վեր:

Ամեն առավոտ ես սովորություն ունեմ ածիլվելու: Դա շատ օգտակար բան է, հատկապես ինձ նման մենակյացի համար: Մարդ թարմանում ու կարծես ջահելանում է:

Բայց անցյալ օրը անզգուշաբար կոտրեցի հայելին, որը ինձ ծառայում էր դեռևս ուսանողական տարիներից, և հիմա ստիպված եմ սապոնափրփուրի

մեջ կորած դեմքիս նայել պատուհանի ապակու արտացոլման մեջ:

Համոզվեցի, որ հայելու կոտրվելը վատ նշան է:

Հենց հաջորդ օրը ես պետք է գնայի սինյոր Ռիկկարդոյի մոտ: Նա ջուլհակների մի մեծ արհեստանոց ունի, որը գտնվում է Սան Սեբաստիանի դարբասների մոտ: Նա ինձ վերջնական պատասխան պետք է տար:

Սինյոր Ռիկկարդոյին ես գտա գրասենյակում: Նա բարձրահասակ և նույնիսկ ինձնից էլ նիհար տղամարդ էր: Ճիշտն ասած, ես էլ հենց դրանով եմ ինձ մխիթարում: Նշանակում է, նիհարակազմ կարող են լինել նույնիսկ նրանք, ովքեր ջուլհակի արհեստանոցներ էլ ունեն:

Սինյորն ինձ առաջարկեց նստել ու շարունակեց զբաղվել իր գործով: Նա միայն մեկ-մեկ, աչքի ծայրով նայում էր իմ կողմը ու շարունակում լռել: Մոտ քառորդ ժամ այդպես սպասելուց հետո միայն՝ սինյոր Ռիկկարդոն մի կողմ դրեց հաստ մատիտը և դարձավ ինձ.

— Ինչո՞վ կարող եմ ձեզ ծառայել:

Ես պարզապես ապշեցի: Մի՞թե սինյոր Ռիկկարդոն արդեն մոռացել էր ինձ:

— Ես... ես եկել եմ իմ առաջարկության պատասխանը լսելու... Հիշու՞մ եք... Քարից պատրաստած...

— Ա՜... Ներեցեք... Հիշեցի: Դոկտոր Բոմբո՛լո...

Ես միայն գլխով արեցի:

— Դոկտոր Բոմբոլո... Ձեր բերած գործվածքի նմուշը հաջող էր... Բայց մի՞թե դուք կարծում եք, որ դա շահավետ է:

— Իհարկե, սինյոր,— պատասխանեցի ես:— Սովորական քար, փառք մադոննային, ամեն տեղ էլ կա: Ես խոստանում եմ այնպիսի մի վառարան պատրաստել, որ դուք օրական ձեր արտադրանքը ավելացնեք մի քանի անգամ: Պատկերացրեք, սինյոր Ռիկկարդո, որ քարի ձուլվածքից պատրաստած կտորեղենը տարիներ անընդհատ չի մաշվում: Նա նույնիսկ չի էլ կեղտոտվում, որովհետև թելը մազմքզուկներ չունի:

— Քարից կտոր...— մտածկոտ ասաց սինյորը:— Էհ, դոկտոր... դոկտոր Բոմբոլո, մի՞թե դուք կարծում եք, որ դա շահավետ է:

— Այո, իհարկե...

Ես վերցրեցի կտորեղենի նմուշը և վառած լուցկին մոտեցրի նրան: Կտորը միայն շիկացավ, իսկ երբ լուցկին հեռացրեցի, շիկացած մասը նորից ստացավ իր նախկին գույնը:

— Տեսնո՞ւմ եք, սինյոր... Այս գործվածքը նույնիսկ չի վախենում այրվելուց: Ջուրն էլ չի կարող թրջել... Մի՞թե շահավետ չէ: Մարդիկ կարող են տարիներ շարունակ հագնել քարե ձուլվածքից կարված հագուստները և բոլորովին չմտածել նորի մասին:

Սինյոր Ռիկկարդոն քահ-քահ ծիծաղեց:

— Հենց դրա համար էլ ձեռնտու չէ... Դոկտոր Բոմբոլո... եթե ես սկսեմ այդպիսի գործվածքեղենի արտադրությունը, ապա մի տարի հետո, երբ ամբողջ Իտալիան հագնի այդ նոր գործվածքից, ես կսնանկանամ, որովհետև մարդիկ այլևս ոչինչ չեն գնի: Ստիպված կլինեմ արհեստանոցս փակել: Ձեռնտու չէ...

Ի՞նչ արած... Ես վերցրեցի իմ գործած կտորը և տուն եկա:

Հենց որ բակ մտա, ջրավազանի մոտ խաղացող երեխաները նորից սկսեցին աղմկել ու քարեր նետել վրաս: Ես շատ էի բարկացել ու այլևս չկարողացա համբերել: Աչքովս բոլորովին հնամաշ հագուստներով մի տղա ընկավ: Ես հանկարծ ծառս եղա ու ճարպիկ մի շարժումով բռնեցի նրան:

Նա անմիջապես սկսեց բարձրաձայն լաց լինել:

— Ներեցե՛ք, դոկտոր Բոմբոլո... Ես չէի հարվածողը... Ես չէ՜ի...

— Սպասիր... Ես քեզ ուզում եմ մի լավ բան նվիրել...

— Բա՛ց թողեք ինձ, դոկտոր Բոմբոլո...

— Ես քեզ թակելու բոլորովին մտադրություն չունեմ,— բարկացած ասացի ես:— Այ, տեսնում եմ բաճկոնիդ թևքը հազիվ երկու կարով է ամրացված... Ես ուզում եմ...



Այդ պահին ձեռքերը թափահարելով, մի կին մոտեցավ մեզ:

Տղան անմիջապես բարձրացրեց ձայնը:

— Մայրիկ... մայրիկ...— ավելի աղեկտուր սկսեց բղավել նա:

— Ի՞նչ է պատահել,— հևացող ձայնով գոչեց տղայի մայրը:— Դոկտոր Բոմբոլո...

— Ներեցեք, սինյորա...— շփոթվեցի ես, տեսնելով նրա մարտական կեցվածքն ու կարմրատակած դեմքը:— Ոչի՛նչ էլ չի պատահել... Ա՛յ... Երեխաները միշտ ծաղրում են ինձ, որովհետև պարկերով քար եմ բերում տուն: Վերցրեք այս կտորը... Հենց նույն քարերից է պատրաստած... Ձեր որդու համար հագուստ կպատվիրեք... Թե չէ, տեսնո՞ւմ եք... Բաճկոնի թևը բոլորովին քանդվել է...

Ես սինյորային մեկնեցի քարե ձուլվածքից գործած կտորի նմուշը, որն այլևս հարկավոր չէր ինձ ու շտապեցի տուն:

... Այլևս ոչ մի հույս չկար: Խնայողություններս սկսեցի ծախսել չտեսնված խնամքով: Նույնիսկ նոր հայելի գնել չուզեցի... Ավելի լավ է, կածիլվեմ պատուհանի արտացոլման մեջ:

Ես շարունակում եմ ամեն առավոտ ածիլվել ու երբեմն նայել պատուհանից դուրս: Ջրավազանի մոտ խաղացող երեխաների բազմության մեջ անմիջապես կարողանում եմ գտնել նրան, ում նվիրեցի փորձնական նմուշը: Նա այժմ նոր հագուստով է և առանց վախենալու կեղտոտվելուց, խաղում է ցեխի ու ջրի հետ:

Ես ժպտում եմ բեղերիս տակ ու հետո տխուր նայում սենյակի անկյունում դրած քարով լի պարկերին:

... Իսկ եթե շուտով իմ անվտանգ ածելիներն էլ վերջանա՞ն... Գուցե այն ժամանակ ես մորո՞ւք կթողնեմ...



## ԳԵՏԱԿԻ ԱՓԻՆ

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

*Խոխոջում է գետակը ժիր,*
*Ծուշաններն են մեղմ բուրում,*
*Գլխիկները թեքած ջրին՝*
*Նրա հետ են համբուրվում:*

*Պարտեզներում՝ մեխակ ու վարդ,*
*Թռչունները են ճռվողում,*
*Ջա՜ն, մայիս է կանաչազարդ,*
*Ծաղկուն մայիս մեր հողում:*

## ԳՅՈՒՂԻ ԵՐԵԿՈ

ՎԱԶԳԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Գյուղի կապույտ երեկո,
Դու միշտ հոգիս ես գերել,
Միշտ տարվել եմ խինդով քո,
Արտերի մեջ մնացել:

Աստղերը քո երկնքի
Այնքան լա՜վ են շողացել,
Եվ միշտ մանուկ իմ հոգին
Երազներով են լցրել:

Հիմա հասակ եմ առել,
Բայց միշտ նույնն է բույրը քո,
Մանկութ ես դու ինձ գերել,
Գյուղի կապույտ երեկո:

Բաժինը
վարում է
պրոֆեսոր
ԳԻՏՈՒՆՅԱՆԸ




# ՄԱՐԳԱՐԻՏ

Ծովերում ու քաղցրահամ ջրերում ապրող փափկամորթների խեցիները ներսից ծածկված են ծիածանագույն նյութով, որը կոչվում է պերլամուտր (սադաֆ, գաղտակուր):

Պերլամուտրը գերմաներենում նշանակում է «մարգարիտի մայր»: Քիմիական անալիզը ցույց է տվել, որ նա բաղկացած է առավելապես ածխաթթվային կալցիումից:

Մարգարիտը սովորաբար տարբեր գույներ է ունենում: Ըստ փափկամորթի տեսակի ու ապրած միջավայրի, մարգարիտը կարող է լինել կարմրավուն, դարչնագույն, մանուշակագույն և նույնիսկ սև: Իսկ կանաչավուն և երկնագույն մարգարիտներ հազվադեպ են լինում: Ավելի շատ հանդիպում են դեղնագույն կամ երկնագույն շողքերով և գաղտակուրի փայլ ունեցող սպիտակ մարգարիտներ:

Մարգարիտի հատիկները տարբեր մեծություն են ունենում, բայց ամենամեծը կաղինի չափ է լինում: Սակայն բնական մարգարիտները բոլորովին կլոր գրեթե չեն լինում: Սովետական Միության թանգարաններից մեկում պահվում է աշխարհի ամենագեղեցիկ և բացարձակապես կլոր մի մարգարտահատիկ, որը կշռում է 5,6 գրամ: Աշխարհի ամենամեծ մարգարիտը գտնըվում է Լոնդոնի թանգարանում: Այդ հռչակավոր մարգարիտի քաշը 85 գրամ է:

Գոյություն ունեն երեսուն տեսակի փափկամորթներ, որոնցից մարգարիտ է ստացվում: Նրանք ապրում են ծովերի ու գետերի ջրերում:

Բնական պայմաններում փափկամորթների կաշվի արտաքին շերտը արտադրում է ածխաթթվային կալցիում և ծածկում նրանց տնակի ներսը: Դա խեցիում բնակվող օրգանիզմների համար բնական երևույթ է: Մարգարիտի առաջացումը փափկամորթների կյանքում հիվանդագին երևույթ է: Երբ խեցու մեջ ավազահատիկ կամ մի այլ օտար մարմին է ընկնում, դա խանգարում է փափկամորթների կյանքի նորմալ պայմանները: Այդ ժամանակ անհրաժեշտություն է զգացվում մեկուսացնելու այդ օտար առարկան: Դրա համար փափկամորթները իրենց օրգանիզմը գրգռող օտար առարկաները ծածկում են սադափե շերտով՝ պերլամուտրով: Այսպես է ծնվում մարգարիտը:

Այն պահից, երբ մարդիկ իմացան, որ մարգարիտը այդ ճանապարհով է առաջ գալիս, սկսեցին մտածել արհեստական կերպով մարգարիտ ստեղծելու մասին: Չինաստանում, Ռուսաստանում և ճապոնիայում հատուկ մասնագետներ կային, որոնք զբաղվում էին մարգարտածին խեցիներ բազմացնելով ու մարգարիտներ ստանալով: Դա եղել է մի քանի դար առաջ:

Մեր օրերում տարբեր ձևի ու մեծության արհեստական մարգարիտներ կարելի է ստանալ ավելի հեշտ ճանապարհով: Քիմիական նյութերի օգնությամբ խեցիներից հանում են գաղտակուրը և նրանից լաք պատրաստում: Դրանով պատած ուլունքները իսկական մարգարտի են նմանվում: Արհեստական ճանապարհով մարգարիտներ կարելի է ստանալ նաև ձկան թեփուկից հանած նյութով, որը նույնպես գաղտակուրի փայլ ունի:



# ԱՎՏՈՑԻՍՏԵՐՆ—ՀՍԿԱՆ

Կուրգանի ճանապարհաշինական մեքենաների գործարանը այժմ թողարկում է 15 տոննա տարողությամբ «Ճ—354» տիպի ավտոցիստերներ:

Այդ գործարանը թողարկում է նաև ուրիշ շատ հզոր մեքենաներ, որոնք ուղարկվում են Լեհաստան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկա, Հնդկաստան և այլ երկրներ:

# ՎՏԱՆԳԱՎՈՐ ՄՐՋՆԱՆՈՑԸ

Ավստրալիան ամեն տիպի կենդանիների իսկական դրախտն է: Ինչու՞, կհարցնեք դուք: Նրա համար, որ այդ մայր ցամաքում համարյա չկան գիշատիչներ: Եվ մարդկանց միշտ չի վիճակվում հաջողությամբ պայքարել կենդանիների բազմացման դեմ, որոնք այդտեղ կործանարար չափերի են հասնում:

Հիշենք ճագարների վտանգը: Ավստրալիա բերված այդ կրծողները բազմացան զարմանալի արագությամբ. 70 տարվա մեջ նրանց թիվը հասավ 600 միլիոնի: Նրանց ոչնչացրած խոտաբույսերով կարելի էր կերակրել 75 միլիոն ոչխար:

Ճագարների բազմացումը դարձավ ազգային աղետ: Բայց 1950 թվականին գիտնականները գտան ճագարների ոչնչացման միջոցը: Բռնված ճագարին վարակում էին վիրուսային հիվանդությամբ (միքսոմատոզ), որն արագորեն տարածվում էր նրանց մեջ:

Դրա հետևանքով Ավստրալիայում երեք տարի անց՝ բրդի արտադրությունն աճեց 20 տոկոսով:

Հազիվ էին հաղթանակ տարել ճագարների դեմ, երբ հինգերորդ մայր ցամաքը ենթարկվեց նոր աղետի, որն արագությամբ տարածվում էր: Խոսքը մրջյունի մի տեսակի մասին է, որի հայրենիքը Հարավային Ամերիկան է: Նա հավանաբար Ավստրալիա էր ընկել բրազիլիական սուրճի հետ միասին: Մրջյունի սիրելի կերը քաղցրեղենն է: Նա ագահությամբ հարձակվում է նարնջի, բանանի, անանասի, խաղողի, շաքարեղեգնի վրա, ուտում է շաքար, միս, ծծում է ծաղիկների նեկտարը և արգելք հանդիսանում նրանց փոշոտմանը: Նա հարձակվում է նաև մեղվի փեթակների և... ճտերի վրա:

Վտանգը մեծ է: Ավստրալիական կառավարությունը հանձնարարել է գիտնականներին և գյուղատնտեսության մասնագետներին՝ գտնել լավ միջոցներ այդ վտանգավոր կենդանիների դեմ պայքարելու համար:

**Դուք կարծում եք, թե այս էջերի նկարներն ու տողերը սխալմա՞մբ են այսպես դասավորված: Ոչ: Եթե ամսագրից զգուշությամբ պոկեք այս երկու թերթը, ծալեք չորս տակ և կտրեք, կստանաք մի փոքրիկ գրքույկ:**



— Հա՛ֆ-հա՛ֆ... Դո՞ւ որտեղից լույս ընկար...





Ջուրը կճռռտվեց, հայելին փշուր-փշուր եղավ։

Ո՞ւր կորավ շնիկը... Քոթոթը տարա-



Ամբողջ գիշերը քամի էր։ Թթենու ճյուղը աղմուկով զարկվում էր պատուհանի ապակուն։ Արթնացա ինչ-որ խշշոցից. անձրև էր գալիս։ Ջրհորդանից ջուրը չռռում էր ցած։

Առավոտը վաղ դուրս եկա պատըշ-









կուսանքով նայում էր ջրին։ Ա՛յ քեզ հա-
նելո՜ւկ...

Բայց նա այս անգամ երկար գլուխ





Լճակը խաղաղվեց։ Բրդոտ շնիկը կանգնած էր նույն տեղում։

—Հա՛ֆ-հա՛ֆ,— հարցրեց Քոթոթը։—Ո՞վ ես, ինչացո՞ւ ես։

Շնիկը նորից անհետացավ։

Ա՛յ քեզ զարմանք բա՜ն... Ո՞ւր կորավ։ Ահա՛, ահա՛, նորից հայտնվեց ու պլըտան աչքերը տնկել է Քոթոթի վրա։

Հա՜ֆ... հա՛ֆ-հա՛ֆ... Դե, պիտի ասե՞ս ով ես, թե չէ... Հո ես քեզ չե՞մ ուտի։

Բայց շնիկը երևի չէր հավատում Քոթոթին. նա այս անգամ էլ չքացավ։

Քոթոթը բարկացավ, նույնիսկ չուզեց ջուր խմել այդ փոսից։ Նա շուռ եկավ ու կռացավ մյուս լճակի վրա։

Այս ի՞նչ բան է։ Նորից մի շնիկ, ճիշտ և ճիշտ առաջինի նման. աչքերը՝ սև հուլունքներ, ճակատը՝ սպիտակ, մի ականջը՝ կախ ընկած, մյուսը՝ վեր ցցված... Կանգնել ու նայում է ուղիղ Քոթոթի աչքերի մեջ։

Բրդոտ էլ այստեղ է ջրի միջից իրեն նայում։ Ու ոնց որ մյուսների քթից թռած լինի...

— Հա՜ֆ,— հաչեց Քոթոթը, վախեցած ետ-ետ գնաց, ապա ուղղակի ջրափոսերի միջով սկսեց վազել դեպի իր բույնը։

Հավերը լեղաճաք դես ու դեն ընկան, իսկ պատի տակ կանգնած հնդկահավը չարացած հետևում էր Քոթոթին։

— Կո՛ւռ-կո՛ւռ-կո՛ւռ... Ա՛յ քեզ խելա՜ռ։ Մի ասող լինի, ո՞ւր ես վազում էդպես գլխապատառ...

Քոթոթը արագ ներս ընկավ իր բույնը, հետո, գլուխը դուրս հանելով, սկսեց կատաղորեն հաչել.

— Հա՛ֆ-հա՛ֆ... Հա՛ֆ-հա՛ֆ...

9 Բայց թե ում վրա էր հաչում՝ ինքն էլ չգիտեր։





գամը։ Բակը ծածկված էր ջրագուբերով։ Հավերը ցրվել էին բակում և թաց գետնից սպիտակ թթերն էին քաղում։

Քոթոթը ծուլորեն նայում էր նրանց։ Մեկ էլ նա վեր կացավ տեղից։ Երևի պարապությունից ձանձրացավ։ Կանգ առավ առաջին ջրափոսի մոտ, կռացավ



չքավեցրեց այդ հանելուկի վրա. շուռ եկավ ու գնաց դեպի մյուս ջրագուբը:

Մոտեցավ, ու... ա՛յ քեզ հրա՜շք: Մի











ջուր խմելու և հանկարծ անշարժացավ տեղում: Ջրի միջից նրան էր նայում մի



բրդոտ շնիկ, աչքերը՝ կլոր. սև հուլունքների նման, ճակատը՝ սպիտակ, մի ականջը՝ կախ, մյուսը՝ վեր ցցված...

— Վը՜վվ...— զարմացած գռմռաց Քոթոթը:

Ջուրը կնճռոտվեց, շնիկը անհետացավ: Սակայն Քոթոթը շարունակում էր նայել ջրին: Ախր նա շատ հետաքրքրասեր էր:



## «ՄՏԱԾՈՂ» ՄԵՔԵՆԱ

Դեռ շատ վաղուց մարդիկ ձգտել են, ինչքան հնարավոր է, թեթևացնել իրենց ուսերին ընկած ֆիզիկական աշխատանքը և դա գցեն մեքենաների վրա, որպեսզի իրենք զբաղվեն մտավոր աշխատանքով։

Բայց գիտության և տեխնիկայի վերջին նվաճումները հնարավոր են դարձնում մտավոր աշխատանքի որոշ մասն էլ հանձնարարել մեքենաներին։ Վերջերս ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի աշխատողները պատրաստել են «Ուրալ» անունով հաշվիչ ունիվերսալ ավտոմատ մեքենա։ Բազմաթիվ էլեկտրալամպերի փոխարեն, այստեղ դրված են կիսահաղորդիչներ։

Այս մեքենան այնքան ճշգրիտ հաշվումներ է կատարում, որ այն ազատ կերպով օգտագործվում է նույնիսկ արդյունաբերական ձեռնարկությունների կոնստրուկտորական բյուրոներում՝ մեքենաների նախագծման ժամանակ, մաթեմատիկական բարդ հաշվումներ կատարելու համար։



## ԾԱՂԿԵ ԺԱՄԱՑՈՒՅՑՆԵՐ

Ծաղիկների պսակները բացվում ու փակվում են օրվա որոշակի ժամերին, և նրանց միջոցով մոտավոր ճշտությամբ կարելի է որոշել ժամանակը։

Առաջին անգամ «ծաղկե ժամացույցներ» կազմել է 18-րդ դարի շվեդացի գիտնական Կարլ Լիննեյը։ Էքսկուրսիաների ժամանակ կարող եք օգտվել հետևյալ աղյուսակից.

| Ծաղիկներ | Բացվում են | Փակվում են |
|---|---|---|
| Մասուր | առավոտյան ժամը 4—5-ին | երեկոյան 7—8-ին |
| Կակաչ | » » 5-ին | ցերեկվա 3-ին |
| Խատուտիկ | » » 5—6-ին | ցերեկվա 2—3-ին |
| Կարտոֆիլ | » » 6—7-ին | ցերեկվա 2—3-ին |
| Վուշ | » » 6—7-ին | ցերեկվա 4—5-ին |
| Մանուշակ | » » 7—8-ին | ցերեկվա 5—6-ին |
| Սպիտակ ջրաշուշան | » » 7—8-ին | երեկոյան 7—8-ին |
| Թթու առվույտ | » » 9—10-ին | ցերեկվա 5—6-ին |
| Խոճկորիկ | » » 9—10-ին | ցերեկվա 5—6-ին |

### ՓՈԽԱԴԱՐՁ ՕԳՆՈՒԹՅՈՒՆ

Ջեբրերն ու ջայլամներն ապրում են Աֆրիկայի տափաստաններում։ Շատ հաճախ նրանք արածում են միասին։ Այդ բարեկամության պատճառն այն է, որ վտանգի դեպքում օգնում են միմյանց։ Նրանք ունեն մի ընդհանուր վտանգավոր թշնամի, դա առյուծն է։

Ջայլամները կարճասուն թռչուններ են և իրենց երկար ոտքերի, երկար պարանոցի ու սրատես աչքերի շնորհիվ կարողանում են հեռվից նկատել թշնամուն։ Վտանգի դեպքում նրանք ճիչ են արձակում ու փախչում, ազդանշան տալով զեբրերին։

Զեբրերը ձիերի նման միասմբակ կենդանիներ են, շերտավոր մաշկով, սև ու սպիտակ թծերով։ Արածում են մեծ հոտերով և շատ ուժեղ են։ Ջայլամների ճիչը լսելուն պես՝ նրանք էլ են դիմում փախուստի, իսկ եթե թշնամին անակնկալի է բերում նրանց, զեբրերն առաջինը իրենք են հարձակվում, պաշտպանելով իրենց հետ արածող ջայլամներին։

ՍՈՆՅԱ ՄԿՐՏՉՅԱՆ





# ԽԱՅԹՈՑԱՎՈՐ ՄՐՋՅՈՒՆԸ

(Հեքիաթ)

ԳՈՒԻԴ ԲԱԲԱՆՍԿԻ

Նկ. Վ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԻ

*Թավ, մթին անտառում տարածվում է մի լայն բացատ։ Այնտեղ վառվռուն ծաղիկներ կան, հոտավետ խոտեր։*

*Բացատի եզրին խշշում է հզոր կաղնին։ Անտառի բնակիչները՝ ծղրիդները, բզեզներն ու թիթեռները ամեն անգամ այդ ծառի մոտով անցնելիս՝ նայում են հարգանքով ու երկյուղով։ Իսկ սրադունչ մկներն այդ տեղը շրջանցում են հեռվից։*

*Ինչո՞վ է նշանավոր հնադարյան կաղնին, որը ոմանց հարգանք է ներշնչում, ոմանց էլ՝ երկյուղ։*

*Բանն այն է, որ ծառի բնի տակ ապրում է Իշամեղու ահեղ քեռին։ Բոլորը գիտեն, թե նա ինչ սարսափելի զենք ունի։ Դա մի մեծ, սուր խայթոց է, որն ակացիայի փուշ է հիշեցնում։ Այդ մասին խորհրդավոր շշուկով լեգենդներ են բերնե-բերան անցնում։*

*Բայց մի ծույլ Մրջյուն ուզեց գողանալ Իշամեղվի խայթոցը, դառնալ բացատի ամենազորեղ բնակիչը, երբեք չաշխատել, ապրել իր ընկերների հաշվին։*

*Եվ ահա նա կանգնած է Իշամեղվի բնի առաջ։ Խորհրդավոր բացվածքն այնպես է սևին տալիս, կարծես անհատակ անդունդ լինի։*

*Մրջյունը երկար ժամանակ ականջը ձայնի պահեց, հոտոտեց օդը։ Բնի ներսում այնպիսի լռություն էր տիրում, կարծես այնտեղ ոչ ոք չկար։ Բայց Իշամեղուն այնտեղ էր։ Մրջյունը դա հաստատ գիտեր։*

*«Էհ, ի՞նչ կա որ... Եթե քնած չէ, կթաքնվեմ, չի էլ նկատի»։*

*Այսպես, ինքն իրեն սիրտ տալով Մրջյունն զգուշորեն ներս մտավ։ Սկզբում գլխիվայր ցած իջավ, հետո վայրէջքը վերջացավ, և բույնը լայնացավ, դարձավ իսկական քարանձավ։ Մրջյունը կանգ առավ, որ վարժվի մթությանը, տեսնի՝ ինչն ինչոց է։*

*Ահա ամենահեռավոր անկյունում մեղրահացեր երևացին։ Դրանք նման էին վայրի սպիտակ կաղինների։*

*Տեսողությունը լարելով՝ Մրջյունը տեսավ նաև Իշամեղվին։ Սարսափից վեց ոտքերն էլ ծալվեցին։ Բայց շուտով հանգստացավ. համոզվեց, որ տանտերը քնած է։ Հավաքելով իր ամբողջ քաջությունը, Մրջյունը մոտ սողաց։ Որտե՞ղ է խայթոցը։ Չի երևում։*

*Վերջապես մութ անկյունում ինչ-որ բան սպիտակին տվեց։ Գողը վրա պրծավ չոր տերևի վրա... Թյո՛ւ, հուզմունքից քրտինքը հոսեց, շունչը կտրվեց։ Չոր տերևի վրա ընկած էր խայթոցը՝ սև, սուր, կոր։*

*Մրջյունը նետվեց դեպի խայթոցը, բայց տերևն այնպես խշխշաց, որ գողի թուքը ցամաքեց։ Նա կուչ եկավ, սպասեց այնքան, մինչև համոզվեց, որ Իշամեղուն շարունակում է հանգիստ մրափել։ Հետո խայթոցը երկյուղով բերանն առավ, ցած սողաց տերևի վրայից և առանց ետ նայելու դուրս վազեց։*

*Երբ տեղ հասավ, արևն արդեն մայր էր մտել։ Աշխատանքից հոգնած մրջյունները քնած էին։ Միայն մուտքի մոտ կանգնած երկու պահակն էին արթուն։ Մեծ, ամուր ծնոտներով զինված բերանները լայն բացելով՝ նրանք փակեցին Մրջյունի ճանապարհը։ Բայց սա նրանց վրա թափահարեց իր սարսափելի զենքը.*

— Տեսնու՞մ եք, Իշամեղվի խայթոցն է։ Հեռու՛, թե չէ կողներդ կխփեմ։

Պահակները ներս թողին անամոթին։ Ի՞նչ կարող էին անել։

Գողը հասավ իր տեղը, պառկեց բնիկում։ Ամուր գրկեց խայթոցը, որ չգողանան։ Նա քնեց անհանգիստ, շուտ-շուտ վեր էր թռչում։ Իսկ լուսադեմին երազ տեսավ։ Իբր թե մրջնանոց եկավ Իշամեղուն, մոտեցավ Մրջյունին, վրան ոլորեց իր սև սարսափելի աչքերը և բարկացած շարժեց բեղերը։

— Ես չե՞մ արել... էլ չե՞մ անի,— կմկմաց Մրջյունը։

— Ստում ես, գո՛ղ,— որոտաց Իշամեղուն և ավելի մոտեցավ։

Մրջյունը փափուկ բարձերի վրայից վեր թռավ, ուզեց փախչել, բայց զգաց, որ ոտքերը չեն հնազանդվում։

— Չե՛ս փախչի, հա՛-հա՛-հա՛,— թնդաց Իշամեղվի թավ ձայնը։

Օգնեցե՛ք,— ամբողջ ուժով ճչաց Մրջյունը և արթնացավ։

Բոլոր մրջյունները նրա գլխին հավաքված՝ հետաքրքրությամբ նայում էին։

— Ինչ եք աչքներդ չռել,— կոպտությամբ գոռաց նա իր ընկերների վրա, և արհամարհանքով ավելացրեց։ — Ձեր գործը հողերի մեջ բարշ գալն է։ Հեռու՛։

Մրջյունները նայեցին նրա ուռած սև խայթոցին և հետ-հետ գնացին։

Ամեն մեկն անցավ իր գործին, իսկ մեր ծույլիկն ախորժակով նախաճաշեց, հետո սկսեց մտածել, թե ի՞նչ ձևով զվարճանա։ Գործի մասին, իհարկե, չէր մտածում։ Չէ՞ որ ինքն արդեն բացառիկ ամենաուժեղ բնակիչն էր։ Եթե ուզենար, Իշամեղվին էլ խայթոցով կսպաներ։ Նա պետք է միայն հրամայեր։ Բոլորը պետք է կատարեին նրա կամքը։

Եվ Մրջյունը վճռեց իսկույն ստուգել իր իշխանությունը։

Նա, ամբողջովին քրտինքի մեջ կորած, իր գործով է տարվել ինչ-որ փոքրիկ մի մրջյուն։ Մեր խայթոցավորը մոտեցավ, փակեց ճանապարհը։ Փոքրիկը զարմացած կանգ առավ, ծվաց։

— Ինչու ես խանգարում։

— Ա՛խ դու, անպիտան,— գոռաց Մրջյունը,— չե՞ս տեսնում՝ ով է կանգնած քո առաջ։ Որ ուզենամ, քեզ տեղնուտեղը կսպանեմ։

Խեղճ Մրջյունիկը թողեց ու փախավ։



Խայթոցավորը նույն ձևով խանգարեց և սպառնաց շատ ու շատ ուրիշ մրջյուններին։

Բոլորն անհանգստացան։

Ի՞նչ անեին, որ ազատվեին անամոթից։ Մրջյուններից մեկն ասաց.

— Եկեք գնանք Իշամեղվի մոտ, պատմենք, թե որտեղ է նրա խայթոցը։

— Ճի՛շտ է,— ուրախացան բոլորը։

Ամենապատկառելի մրջյուններից տասը հոգու պատգամավոր ընտրեցին, ուղարկեցին Իշամեղվի մոտ։

Վաղ առավոտ էր։

Ճանապարհին վիճում էին, թե ով առաջինը մոտի բարկացկոտ բոռու բույնը։ Բայց պարզվեց, որ դրա կարիքը չկա։ Իշամեղուն էլ մրջյունների նման աշխատասեր արարած է։ Նա արթնացել և արդեն նստել էր բնի առաջ։ Փոքրիկ թաթերով սղալում էր իր երկար բեղերը, որ գործի անցնի։



Պատգամավորները խոնարհաբար գլուխ տվին, իսկ ամենածեր մրջյունն ասաց.

— Թանկագին քեռի Իշամեղու։ Մենք երբեք չէինք համարձակվի քեզ անհանգստացնել, եթե գործը քեզ չվերաբերեր...

— Կարճ խոսիր,— անհամբերությամբ նրա խոսքը կտրեց Իշամեղուն, նայելով արդեն բարձրացող արևին։

— Կարճ ասած, մերոնցից մեկը, մի դատարկապորտ խուլիգան, գողացել է քո խայթոցը և հիմա մեզ...

— Ի՞նչ։

— Հիմա մեզ օր ու կյանք չի տալիս։

— Ինչ է գողացե՞լ։

— Մի՛ բարկանա, քեռի, բայց սա ճշմարտություն է։ Գողացել է քո խայթոցը։



— Հա՛-հա՛-հա՛,— բրբջաց Իշամեղուն։— Հապա սա ի՞նչ է։

Եվ նա ցույց տվեց իր սև, փայլուն խայթոցը։

— Բայց... բայց նա էլ այդպիսի մի խայթոց ունի,— շփոթված կմկմացին մրջյունները։

Իշամեղուն հանկարծ ինչ-որ բան հիշեց։

— Սպասեցեք,— ասաց նա և իսկույն մտավ բույնը։ Շուտով դուրս եկավ բարկացած։— Նա իմ հանգուցյալ հոր խայթոցն է գողացել, որը ես պահում էի իբրև հիշատակ։ Շու՛տ, գնանք մրջնանոց։

Իշամեղուն օդ չբարձրացավ։ Պատգամավորների հետ մրջնանոց գնաց ոտքով։

— Հապա մի դուրս կանչեք ձեր հերոսին։

Մի քանի մրջյուն ներս մտան, որ արթնացնեն խայթոցավոր ծույլին։ Սա նրանց վրա գոռաց.

— Ինչպե՞ս եք համարձակվում ինձ անհանգստացնել։ Հեռու՛, թե չէ կապանեմ։

Բոլորը միասին հարձակվեցին ավազակի վրա, կապկպեցին, դուրս բերին։ Խայթոցն էլ դրին կողքին։

Իշամեղուն նայեց Մրջյունին։

— Դու և՛ անպիտան ես, և՛ հիմար։ Ա՛յ, տես, թե որտեղ է իմ խայթոցը։ Սրանից կարող եմ օգտվել միայն ես։ Հենց այս րոպեին ես դա կապացուցեի, բայց խայթոցս չեմ ուզում քեզանով կեղտոտել։

Հետո դիմեց մրջյուններին.

— Հույս ունեմ, որ ինքներդ կգտնեք հարմար պատիժ։

Բոլորը գոչեցին։

— Վռնդե՛լ մրջնանոցից։

— Թող կորչի՛։

Մրջյունն ուրախացավ. դե նա մահվան դատավճռի էր սպասում։

Բայց ուրախանալը դեռ վաղ էր։

Մրջյունն այնքան վազեց, մինչև ուժասպառ եղավ, ընկավ գետնին։

Երբ մի քիչ հանգստացավ, սկսեց միտք անել, թե ինչպես ապրի։

«Գնամ մի ուրիշ մրջնանոց գտնեմ։ Կխնդրեմ, ներս կընդունեն»։

Եվ նա գնաց հովանավորներ փնտրելու։ Բայց բանն այն է, որ նրա անարժան արարքների մասին ոչ միայն բացատում, այլև ամբողջ անտառում արդեն գիտեին։ Թիթեռներն առհասարակ արտասովոր պատմությունների սիրահարներ են։ Ծաղկից-ծաղիկ թռչելով, նրանք ամենից շուտ են տեղ հասցնում անտառի նորությունները։ Նրանք ամեն տեղ արդեն պատմել էին խայթոցի պատմությունը։

Ահա մեր հերոսը հասավ շեկ մրջյունների բույնը (ինքը սև էր)։ Խնդրեց, որ ներս թողնեն, բայց պահակները ետ դարձրին.

— Լսել ենք քո մասին։ Հեռացիր քանի ողջ ես։

Ոչ մի մրջնանոց նրան չընդունեց։ Նա հոգնեց, սկսեց քաղցից տանջվել։ Երեկոն վրա հասավ։ Մրջյունը հազիվ էր սողում, ինքն էլ չիմանալով, թե ուր, և հոնգուր-հոնգուր լաց էր լինում։

Հանկարծ տեսավ մի կլոր, հարթ քար։ Քարը ծածկված էր ծառի տերևով։ Մրջյունը բարձրացավ և կուչ եկավ այնտեղ։ Քարը տաք-տաք էր. արևն ամբողջ օրը տաքացրել էր։

Եթե նա այդքան ծույլ չլիներ և ժամանակին վեր կենար, ամեն ինչ բարեհաջող կանցներ։ Բայց ի՞նչ կարելի է սպասել դատարկապորտից։ Բոլոր թռչուններն արդեն ծվլլում էին, ճյուղից-ճյուղ թռչում, խոտերի մեջ վազվզում էին բզեզները, իսկ Մրջյունը դեռ շարունակում էր մրափել։ Հենց այդ ժամանակ վազեց անցավ մի այծիկ։ Ջուր խմելու էր գնում։ Ոտքը պատահմամբ դրեց քարի վրա և... և ճզմեց Մրջյունին։ Քարի վրա միայն մի թաց կետ մնաց։

Ափսոսո՞ւմ եք Մրջյունին, իսկ ես այնքան էլ չեմ ափսոսում։ Չուզեց ազնվորեն ապրել, թող տուժի։

Ուկրաիներենից թարգմ. Պ. Միքայելյան

# ՄԵՆՔ ԳՆՈՒՄ ԵՆՔ ԱՐՇԱՎԻ

Ն. ՊԱԼԱՄԱՐՉՈՒԿ

Մենք գնում ենք արշավի,
Մեր դեմ ձորեր, մեր դեմ լեռ,
Բռնած կանաչ մի շավիղ,
Բարձրանում ենք դեպի վեր։
Ոչ արևը հրալից,
Ոչ անձրևը հորդառատ,
Չեն շեղում մեզ մեր ճամփից՝
Ընթանում ենք միշտ առաջ։
Գիժ գետակի ջինջ ափին,
Մենք վրաններ ենք խփում,
Իսկ երբ հանգչում է արփին՝
Թեժ խարույկ ենք բորբոքում։
Հետո շուրջը կրակի
Երգում ենք ու զրուցում,
Եվ մեր երգից սրտագին
Ասես անտառն է ցնծում։
Մեկ էլ հնչում է ահա
Հարմոնի ձայնը ուժգին,
Պար ենք բռնում՝ մենք ուրախ
Ու թռչկոտում խնդագին։
Կանաչ գետինն է թնդում,
Ոգևորված մեր պարից,
Մենք պարում ենք, կատակում,
Ալեկոծվում եռանդից։
Երբ կրակը հուրհրան
Ավարտում է ու մարում,
Ուրախ մտնում ենք վրան
Եվ վայելում քաղցր քուն։



Նկ. Ա. ԳԱԼԵՆՑԻ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

## ԽԱՂԱՂ ՀԱՐԵՎԱՆՆԵՐ

Որսից վերադառնալիս Նորաշենի Դիմիրչի գյուղի մոտ շատ սերմնացաններ հանդիպեցինք: Սև սաթի նման փայլուն փետուրներով, կարմիր կտուցներով թռչուններ են դրանք: Մի խումբ թառել է ծառին, մի այլ խումբ մարգից անդ կոլտնտեսականների ետևից որդ է փնտրում ու ցնցում, իսկ մյուսները ցրված են արածող նախրի մեջ:

— Սրանք լավ միս ունեն, պապանցիր մի քանիսի փետուրը քամուն տամ,— ասաց մեր ընկեր Հակոբը, որսորդական հրացանը պատրաստելով:

— Չփորձես, մ..ո չեն թողնի,— առարկեցի ես:

— Ո՞նց թե... քիչ է մնում մարգագետինների տակն ընկնեն, ինձ հիսուն քայլ մոտ չե՞ն թողնի... Սանդրո, մեքենան կանգնեցրու, մի տես ոնց եմ դրանց ըմբուլը քամուն տալիս...

Հենց մեքենան կանգնեց, անհոգ կերպով կեր որոնող թռչունները կանգ առան, լարվեցին իրենց տեղում, զգաստացան: Հակոբը դեռ տասը քայլ չէր հեռացել մեքենայից, երբ ծառի վրայի խումբը թռավ, իսկ գետնին եղածները սկսեցին քայլելով հեռանալ: Իզուր էր որսորդը փորձում հրացանը թարցնել. թռչունները հեռվից նայում էին կասկածանքով և, եթե լեզու ունենային, կասեին՝ «Ոչխարի մորթի ես հագել, բայց գայլի պոչըդ տակից երևում է...»

Չէ՛, թեան, որ կողմ թեքվեց՝ սարսափահար թռան: Խորամանկություն արավ՝ խառնվեց ջանաքավոր կանանց, դա էլ չօգնեց. թռչուններն իրենց բնազդով զգացել էին վտանգը և կանանց խմբից էլ էին խուսափում:

Այդպես էլ Հակոբը չկարողացավ կրակել: Ետ եկավ հոգնած, վրդովված.

— Տեսա՞ք ինչ արին էդ սրիկաները...

— Սրիկա չեն, ինձ ու քեզ նման ուզում են ապրել,— պատասխանեցի ես ծիծաղելով:

Երբ մեքենան շարժվեց, մենք նկատեցինք, որ սերմնացանները խումբ առ խումբ նորից վերադառնում են հողի աշխատավորների մոտ:

Վերադառնում էին նրանց հետ շարունակելու իրենց խաղաղ բարեկամությունը...

## ՉԱՐԱՃՃԻ ԱՐԱՐԱԾՆԵՐ

Ձիերը հեծած ընթանում էինք Կապուտջուղի զառիվեր լանջով: Գնում էինք ալպյան արոտները: Հուլիսյան տաք օր էր. ներքևում տեղ-տեղ դեղնել էին տալիս արտերը: Այս որտե՞ղ են ցանք անում լեռնածորի հողագործները... Թե որ կածանից շեղվեցիր, էլ ոտքիդ վրա չես կարող կանգնել:

— Բա որ էստեղ ցանք չանեն, արջերն ինչո՞վ են ապրելու,— հեգնեց ընկերս՝ լեռնածորցի Խիկարը:

— Այստեղ ա՞րջ էլ է լինում,— հետաքրքրվեցի ես:

— Լինո՜ւմ... Շատ է լինում, էնքան, որ պատահում է, կոլտնտեսությունից առաջ նրանք են բերքը հավաքում...

Լուռ առաջ գնացինք և երբ անցանք հերթական

լեռնամասը, ընկերս ձին կանգնեցրեց շավիղից ցած փռված արտի եզրին։

— Մի տե՛ս, ինչ են արել անիրավները,— մատով ցույց տվեց նա։

Դեռ կանաչ արտը տեղ-տեղ վերից վար տափակեցված էր. կարծես հաստ գերաններ ու կոճղեր էին գլորել զառիվայրով դեպի ցած։

— Ինչու՞ են տափակեցնում, ի՞նչ շահ ունեն...

Ընկերս գիտակ մարդու նման խորամանկորեն ժպտաց, որ նշանակում էր. «Դեռ զարմանալու շատ բան կտեսնես մեր կողմերում...»

— Գլորվում են, խաղ անում, դրանից էլ տափակում է... Ամեն կենդանի մի բան է սիրում, դրանք էլ՝ արտի մեջ թավալ տալը...

Էհ, խիկարն է է՛լի, միամտի տեղ է դրել ինձ, ուզում է զարմացնել արջերի արած ու չարած գործերով։

Բայց վերադարձին նրա ասածը հաստատվեց։ Երբ մոտեցանք նույն արտին, նրա կանաչ լանջով երկու մուգ կծիկներ էին գլորվում. արջի քոթոթներ էին։ Գլորվում էին փոքրիկ կոճղերի նման, իրենց ծանրության տակ ծալում — տափակացնում կանաչ արտը ու իրենց հետևներից ակոսներ թողնում վերից վար։

Ահա մեկը գլուխը խոթեց ոտքերի արանքը, կծիկ դառավ ու գնաց, եղբայրն էլ հետևից... Գլորվելով հասան ծորը և հեհե ետ եկան։ Իսկ նրանց մայրը մի ժայռի տակ պպզած, հսկում էր շրջակայքը և հավանաբար լուռ հրճվում իր բալիկների խաղով։



Վերադարձի ճամփին քոթոթները կոխ բռնեցին իրար հետ և սուզվեցին բարձր արտի մեջ։

Մա՛յր արջը այնպես էր տարվել իր քոթոթների խաղով, որ մեզ չէր նկատում։ Նա ուշքի եկավ միայն իմ ձիու փռռոցից. երևի խեղճ սմբակավորը արջի ներկայությունից ահի մեջ էր ընկել։

Մայր արջը նայեց մեզ և կարծելով, որ անզեն ենք, հանգիստ իջավ զավակների մոտ ու իր լեզվով հրամայեց նրանց դուրս գալ արտից։

Բայց այդ հասակում ո՞վ է լսել իր մոր հրամանը, որ նրանք լսեին...

Մայրն ստիպված ուժի դիմեց. ապտակներ հասցնելով սաստեց երկուսին էլ և առաջն արած գնաց դեպի մոտակա անտառը։

— Հը՛, չե՞ս կրակում,— հարցրեց ընկերս, գոգիս դրած հրացանին ակնարկելով։ Ես նրան պատասխանեցի միայն հանդիմանական հայացքով։








Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Ձեզանից շատերը կարդացած կլինեն Մարշակի «Զախորդ վարպետը» գրքույկը: Այնտեղ նկարագրված է մի պարծենկոտ տղա, որը անգամ մեխ խփել չգիտի, բայց իրեն ամենագետ է կարծում:

Նա ունի մի ամբողջ արհեստանոց՝ աքցան, կացին, երկու ծակիչ, սղոց, մուրճ, դուր, ռանդա, հաստ ու բարակ տախտակներ, փոքրիկ ու մեծ մեխեր: Եվ կարծում է, առանց հմտության, միայն դրանց միջոցով կարող է նույնիսկ բուֆետ սարքել: Բայց բուֆետ սարքելու փորձը անհաջող է անցնում: Հետո նա որոշում է աթոռ պատրաստել: Սկըսում է աշխատել կացնով: Եվ քանի որ կացնի հետ վարվել չգիտի, կացինը դուրս է թռչում ձեռքից, մեխվում է պատին: Այս անգամ էլ նա փորձում է շըրջանակ պատրաստել, բայց մինչև այսօր էլ շրջանակը չի ավարտել, քանի որ մեր հերոսը՝ նախքան գործի անցնելը ոչինչ չի սովորել:

Այսպիսի պարծենկոտներ և մեծամիտներ չեն Թելմանի անվան դպրոցի պիոներները: Նայեցեք ահա այս նկարի փոքրիկ, թխադեմ պատանուն՝ հինգերորդ դասարանի աշակերտ Կառլեն Կարապետյանին: Նա հենց նոր է ավարտել բազմոցի փոքրիկ մոդելը և մոտեցել վարպետ Վաչիկին՝ իմանալու նրա կարծիքը: Այո, Կառլենը փոքրիկ բազմոց է պատրաստել՝ կողքի փայտե մասերը հղկած ու փայլեցրած, նստատեղը կաշվով պատած: Դա մի փոփուկ, լավ բազմոց է, բայց իսկական բազմոցից շատ է փոքր: Նրա վրա, փոքրիկ քույրիկի տիկնիկը, իր ընկերուհիների հետ, հազիվ տեղավորվի: Բայց, ախր դա էլ գործ է: Չէ՞ որ դըրանից է ծնվում մեծ գործը: Լավ է աշխատում Կառլենը, վարպետ Վաչիկը գոհ է նրանից:

Հաջողությունը, իհարկե, ինքն իրեն չի եկել: Կառլենը մասնակցում էր խմբակի բոլոր պարապմունքներին, ուզում էր մի սեղան սարքել, բայց ինչ անում էր՝ լավ չէր ստացվում: Դրանից հետո նա ուշիմ լսեց վարպետ Վաչիկի ցուցումները: Դա է պատճառը, որ ընկերները հավաքված նրա մոտ, չեն կարողանում զսպել իրենց հիացմունքը:

— Ինչ լավն է...

Խմբակի անդամները, իրոք, շատ բան գիտեն, ամեն բան ձեռքներից գալիս է: Երբ միանում են այդ ոսկի ձեռքերը՝ ապա ինչե՜ր ասես, չեն անում: Վերանորոգում են իրենց դպրոցի գույքը՝ աշակերտական նստարանները, սեղանները, պատրաստում են կախարաններ, դասամատյանների համար դարակներ:

Ա՛յ, օրինակ, թվում է, թե հասարակ բան է դարակ պատրաստելը, մի քանի տախտակ տաշել, հղկել ու հարթել և ամրացնել: Բայց սոսինձ հարկավո՞ր է, մեխ նույնպես:

— Տղաներ, ի՞նչ անենք...

Մեկը սոսինձ է պատրաստում, մյուսը հասցնում է մեխը:

Եվ ահա դարակը պատրաստ է:



— Ա՛յ, որ ասում եմ վատ չի, ի՞նչ պակաս է իսկականից: Չէ, իսկապես, գովելու տղաներ եք,— ուրախանում է վարպետ Վաչիկը...

Իսկ այս ի՞նչ է... Երրորդ հարկից ինչ-որ ձայներ են գալիս:

Պարզվում է, որ ծեփագործների խմբակի անդամներն են աշխատում այնտեղ՝ կապույտ արտազգեստներ հագած: Այնտեղ են Սեյրանը, Լևոնը, Սամվելը, Վարդգեսը, Էդվարդը և ուրիշները: Մի քանիսը նստարաններն են դուրս բերում, իսկ այնտեղ աստիճանի մոտ են երեք հոգի: Էդվարդը դանդաղ խառնում է լուծույթը:

— Լավ խառնիր, որ տակը ամուր չլինի,— զգուշացնում է Վոլոդյան:

— Խառնում եմ էլի,—ասում է Էդվարդը և այնպես ուժգին է խփում փայտիկը, որ լուծույթի կաթիլները թռչելով, ներկում են իր շորերը:

— Վա՛յ, այդ ի՞նչ է, ոնց որ կրկեսի ծաղրածու լինես,— ասաց տղաներից մեկը:

— Ինկի էլ չէ,— արդարանում է Էդվարդը և դույլը բարձրացնելով, մեկնում է ընկերոջը.

— Ձեռքս չի հասնում, աստիճաններով վեր բարձրացիր:

Էդվարդը վեր է ելնում մի քանի աստիճան, դույլը Վոլոդյայի հետ ամրացնում են երկաթե կեռին: Այս անգամ էլ Վոլոդյայի հերթն է: Վրձինը նրա ձեռքին աջ ու ձախ է շարժվում:

Մինչ երկու ընկերով սպիտակեցնում են պատի վերին մասը, Վարդգեսը ձեռքի գործիքով ցածում հարթում է պատի փորվածքները:

Նրանք արդեն սպիտակեցրել, ներկել են դպրոցի դասարաններից մի քանիսը և որոշել են մինչև ուսումնական տարվա վերջը ավարտել դպրոցի վերանորոգումը:

Այսպես է ընթանում գործը: Ամեն ինչ հեշտ չէ, դժվարություններ էլ են լինում, բայց դե, երբ համառություն և աշխատասիրություն՞ կա, դժվարությունն ի՞նչ է որ...

Կոշտանում են նրանց ձեռքերը, ներկ էլ է թռչում նրանց արտազգեստներին, ոչի՞նչ, կյանքի համար են պատրաստվում:

Այդպես են Թելմանի դպրոցի տղաները, որոնք այսօր աշակերտներ են, իսկ վաղը իսկական վարպետներ, հմուտ մասնագետներ կդառնան:

Եվ նույնիսկ այն «ամենագետ», ձախորդ վարպետը, եթե գնար այդ դպրոցը և ընկերանար մեզ արդեն ծանոթ տղաների հետ, աշխատեր նրանց նման, ինքն էլ կարող էր լավ գործեր կատարել, նույնիսկ բուֆետ պատրաստել:



Մայիսի 19-ին մեր անծայրածիր երկրի բոլոր՝ քաղաքներում ու գյուղերում միաժամանակ փողփողացին կարմիր վզկապները, հնչեցին մանկական ուրախ երգերն ու անկաշկանդ ծիծաղը: Այդ օրը, սիրելի երեխաներ, դուք նշեցիք ձեր սրտագին տոներից մեկը՝ պիոներական կազմակերպության ծնունդը: Դուք նաև պատմեցիք ձեր ուսման, խրախուսելի նախաձեռնությունների, մեծ-մեծ գործերի մասին և շատ ուրախացրիք ձեր ծնողներին, ավագ եղբայրներին ու քույրերին: Օրեցօր բազմաթիվ նոր ջոկատներ են դուրս գալիս «յոթնամյակի ուղեծիր», որոնք կոչվում են «Յոթնամյակի արբանյակ ջոկատներ»: Դրանք այն ջոկատներն են, որոնք հետևում թողնելով բոլոր տեսակի թերությունները, միայն բարձր գնահատականներով ու լավ գործերով են թռչում դեպի կոմունիզմ: Այսօր մեր գիգանտ գործարաններից դուրս են գալիս բազմաթիվ տրակտորներ, կոմբայններ, ջերմանավեր, էլեկտրաքարշեր և զանազան այլ մեքենաներ, որոնց մի մասը պատրաստված է ձեր հավաքած մետաղի ջարդվածքով: Հիանալի բերք են տալիս ձեր ձեռքերով տնկած այգիները: Հապա ձեր խնամած ճագարնե՞րը, հավե՞րը, բադերն ու սագե՞րը: Մի՞թե հնարավոր է թվել այդ ամենը: Դրանք ձեր նվերներն են հարազատ Հայրենիքին:



Չինաստանի պիոներները ունեն իրենց հնգամյա պլանը։

Ցզյանսյանի գավառի երեխաները տնկել են 145 պուրակ, իսկ Խեյլունցզյանի պիոներները ստեղծել են տրակտորային բրիգադներ։

Դեմոկրատական Գերմանիայում պիոներները կապում են երկնագույն փողկապ։ Նրանք օգնում են գյուղացիներին, աճեցնում են մեծ քանակությամբ եգիպտացորեն։ Պիոներների հավաքած միջոցներով կառուցված է Է. Թելմանի նավը։



# ՄԵՐ ԲԱԿՈՒՄ

Մ. ԹԱՐՅԱՆ

Մեծ աղմուկ է, իրարանցում՝
Նորակառույց մեր փողոցում.
Ձայն են տալիս, կանչում.— տղե՛րք
Երկաթի լոմ էլի՛ բերեք...

Սեթոն բերեց ծակ ինքնաեռ,
Հայկը՝ ջարդված մանգաղը կեռ.
Սեդան բերեց մաշված կաթսա.
Գևոն՝ մի հին մեքենա։

Սահակ պապն էլ փայտին հենված,
Խիտ մորուքը կրծքին փռած,
Ջիբուխ, թազբեհ թողած տանը,
Բերեց իր հին վառարանը...

Այսպես՝ լոմ են բերում անվերջ՝
Կուտակում մեր լայն բակի մեջ,
Որ շինեն խոփ ու տրակտոր,
Ճամբեն խոպան հողերը նոր...





Նկ. Վ. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Բուլղարիայում պիոներները կոչվում են սեպտեմբերիկներ։ Նրանք այդպես են կոչվում, որովհետև այդ ամսին է եղել բուլղար ժողովրդի ազատագրումը։ Անցած տարի սեպտեմբերիկները հավաքել են մեկ միլիոն կիլոգրամ մետաղի ջարդված ք և թուղթ։



Իտալիայում պիոներների միությունը հրատարակում է «Պիոներ» ամսագիր։ Դասերից հետո պիոներները իրենք են տարածում տպագրված համարները և փողը հանձնում են իրենց ջոկատին։ Միլանի պիոներական կազմակերպությունը ապրում է միայն «Պիոների» վաճառքից ստացված գումարներով։




Հունգարիայում 8—11 տարեկան երեխաներին ասում են «փոքրիկ թըմբկահարներ», իսկ 11—14 տարեկաններին՝ պիոներներ։ «Փոքրիկ թմբկահարները» երկնագույն վզկապ են կապում։ Նախքան պիոներ ընդունվելը նրանք անցնում են 6 ամիս փորձաշրջան։




Պիոներ դառնալուց հետո կապում են կարմիր վզկապ։ Ջոկատների ջոկատները կրում են վայրի կենդանիների անուններ, իսկ աղջիկներինը՝ ծաղիկների։

## ԾԱՂԿԱՁՈՐՈՒՄ

*ՀԵՂԻՆԵ ՄՈՒՐԱԴՅԱՆ*

Ծաղկածորի անտառներ,
Կանաչ ու զով անտառներ,
Որքա՜ն երգ կա ձեր գրկում,
Որքա՜ն հով է շնկշնկում։

Ձորում գետակն է խշշում,
Աղբյուրն է մեղմ կարկաչում,
Ու հսկայի պես անքուն,
Շուրջս անտառն է տնքում։

Ծառի վրա մի թռչնակ,
Մի քիչ հեռու մի առվակ,
Փշակի մեջ մի չղջիկ,
Խոտերի մեջ մի զատիկ։

Թե երգում են միասին,
Գովք են ասում ձեր մասին,
Իսկ թե զատ-զատ են երգում,
Էլի ձեր գովքն են անում։

## ՈՒՐԱԽՈՒԹՅՈՒՆ

*Ս. ԽԱՐԱԶՅԱՆ*

Մեր Գուրգենիկը ուրա՜խ է այնքան,
Իր անուշ ձայնով երգում է նա,
Խնձոր է բռնել առաջին անգամ
Փոքրիկ ու դալար ծառը նրա։

Ջրում է, ջրում ամեն առավոտ,
Որ միրգը ծառի խոշորանա,
Այս երկնքի տակ, բակում արևոտ
Ժպտում է դալար ծառը նրա։

Նոր խնձորներն են տղային թովում,
Թող ո՛չ ոք ծառին չմոտենա,
Տեսե՛ք, ինչպես է խշշում, օրորվում
Փոքրիկ ու դալար ծառը նրա։

## ՍՐՏԱՆՈՒՑ ՀԱՆԴԻՊՈՒՄ



Ծափերից և ուռայից թնդում էր Հայֆիլհարմոնիայի համերգային մեծ դահլիճը։ Ծփում էին կարմիր փողկապներն ու գույնզգույն ժապավենները։ Իսկ դահլիճով քայլում էր հռչակավոր զորավարը՝ Սեմյոն Բուդյոննին, երեխաները աչք չէին կտրում քաղաքացիական պատերազմի փառապանծ հերոսից, որը դանդաղ քայլերով, երեխաներին ողջունելով բարձրացավ ծաղիկներով ու կարմիր պաստառներով զարդարված բեմը։ Ծափահարությունները ու ուռաները ավելի բորբոքվեցին։ Քիչ բան չէ. երեխաները տեսնում էին իրենց սիրելի հերոսին ոչ թե կինոյում կամ լուսանկարում, այլ բեմի վրա, լսում էին նրա ձայնը։ Իսկ երեխաներից մեկին բախտ վիճակվեց իր փոքրիկ թաթիկներով պիոներական փողկապ կապել մարշալի վզին։

— Թույլ տվեք հոգուս խորքից ջերմորեն շնորհակալություն հայտնել ձեզ՝ սրտագին ընդունելության համար,— պատասխան խոսքում ասաց ընկեր Բուդյոննին։— Ի՞նչ եմ ցանկանում ես ձեզ՝ երեխաներիդ։ Ամենից առաջ, որ դուք սրբությամբ կատարեք Իլյիչի պատգամները, լավ և գերազանց սովորեք, լինեք կարգապահ։

## ՎԱՉԻԿԻ ՎԱՐԴԵՐԸ

*ԱՐՄԵՆԱԿ ԹԱՄԱԶՅԱՆ*

*Մայիսմեկյան պայծառ առավոտ էր։*

*Բանվորական փոքրիկ քաղաքը տոնական տեսք ուներ։ Բոլոր շենքերի ճակատներին փողփողում էին կարմիր դրոշները։*

*Մաքուր հագնված, մի փաթեթ սեղմած կրծքին Վաչիկը թռչում էր դեպի դպրոց։ Ուրախությունից ասես նա չէր տեսնում ո՛չ տուֆաշեն շենքերը, ո՛չ քչքչան առուները, ո՛չ էլ անցուդարձ անող մարդկանց։*

*Նա-շնչակտուր հասավ դպրոց։ Այդ պահին դասղեկ ընկեր Արփիկը աշակերտների հետ ուրախ զրուցում էր։*

*Վաչիկը մոտեցավ դասղեկին և նրան հանձնեց փաթեթը։ Ուսուցչուհին զգուշությամբ բացեց փաթեթը և հիացմունքով ասաց.*

*— Ի՜նչ հրաշալի վարդեր են... Ձեր պարտեզի՞ց, Վաչի՛կ։*

*— Ո՛չ, ընկեր Սուրենյան, սենյակում եմ աճեցրել։*

*— Ավելի լավ, ճուտիկ ջան, ապրե՛ս...*

*Ապա ընկեր Արփիկը դարձավ երեխաներին.*

*— Ա՛յ, երեխաներ, Վաչիկի բերած վարդերով հիմա մենք կզարդարենք Լենին պապիկի նկարի շրջանակը։*



Ռումինիայի պիոներները մեծ խնամքով հոգ են տանում հայրենիքի ազատության համար ընկած մարտիկների հուշարձաններին, գրի են առնում ժողովրդական երգեր, հեքիաթներ, զրույցներ, հայտնաբերում են հնագույն իրեր ու փաստաթղթեր, որոնք մեծ արժեք ունեն։

Չեխոսլովակիայում պիոներները նույնպես օգնում են սոցիալիզմ կառուցող իրենց ծնողներին, ավագ եղբայրներին ու քույրերին։ Ով 15 կիլոգրամ թուղթ և 30 կիլոգրամ մետաղի ջարդված է հավաքում, ջոկատի հավաքույթում նրան է հանձնվում «Պատանի շինարար» կարմիր ժապավենը։ Այժմ ավելի քան 125 հազար պիոներ կրում են այդպիսի ժապավեններ։



## ԼՍԻՐ, ԻՄ ՏԻԿՆԻԿ

Գ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Կար ու ձև եմ ես սովորել
Մանկապարտեզում.
Ա՛յ, գոգնոցս ես եմ կարել,
Տե՛ս, ոնց է սազում։

Գիտե՞ս, որ սա նոր ձևի է,
Ես եմ հնարել,
Տե՛ս, իմ տետրում քանի հատ նոր
Ձև եմ նկարել։

Դե, մոտ արի, սիրուն տիկնիկ,
Չափդ վերցնեմ,
Քեզ էլ հիմա մի սիրուն շոր
Կարեմ, հագցնեմ։



Ֆրանսիայում շատ մանկական կազմակերպություններ կան, բայց ամենամեծը Խիզախների միությունն է, որը միավորում է քաղաքային աշխատավորների երեխաներին։ Այս միության անդամները կրում են երկնագույն վերնաշապիկ և կարմիր եզրավոր կապույտ վզկապ։

Երեխաները խմբավորվում են ըստ բնակության վայրի և չի թույլատրըվում կազմակերպություններ ստեղծել դպրոցներին կից։




## ՄԱՅԻՍ

ՄԱՆՈՒԿ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Դու գալիս ես ծաղիկներով,
Քնքուշ սիրով ես գալիս,
Նուշաբացի շաղիկներով,
Անմար հրով ես գալիս։

Քո դրոշները են փողփողում
Կակաչների նման հուր,
Զնգուն երգեր ես դու երգում
Երկնքի տակ մեր մաքուր...



Հակոբ Հակոբյանի անվան դպրոցի երգիծական պատի թերթը՝ «Հայելին» իր էջերում ծաղրում է ծույլերին, անկարգներին, փնթիներին ու շաղակրատներին:

Վզկապը փախչում է իր տիրոջից:



— Ծույլերի դարդից հիվանդացել եմ:

## ԱՐՈՒՍՅԱԿԻ ՊԱՅՈՒՍԱԿԸ

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ



Ծանր-ծանր տնքալով,
Գրքերն հազիվ քաշ տալով,
Արուսյակը ուշացած,
Քրտնած մտավ դասարան.

— Պայուսակդ մի շուտ բա՛ց,—
Ասաց դասղեկը նրան,—
Տեսնեմ միջին ինչե՞ր կան,
Որ ուռեցրել ես այդքան.
Ահա՛ թե ինչ... այստեղ կա
Ուտելիքի մեծ պաշար.
Տեսեք՝ երշիկ ու գաթա,
Գետնախնձոր ու գազար.
Սա էլ փշատ ու չամիչ...
Իսկ մատիտներ ու գրի՞չ.
Դե... դրանց տեղ չի եղել,
«Մոռացել», տանն է թողել...

Սա ի՞նչ է, ա՛յ Արուսյակ,
Խոհանո՞ց, թե՞ պայուսակ.

## *Մի անգամ...*

### ԴԱ ՈՉ ՄԻ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ ՉՈՒՆԻ

Մի անգամ հայտնի գիտնական Ալբերտ Էյնշտեյնը ամբողջովին կլանված իր մտքերով, անցնում էր փողոցով, հանդիպեց իր բարեկամներից մեկին:

— Երեկոյան ինձ մոտ եկեք,— սիրալիրությամբ խնդրեց նա,— ինձ մոտ կլինի նաև պրոֆեսոր Ստիմսոնը:

— Բայց չէ՞ որ ես եմ Ստիմսոնը,— վրա բերեց շվարած բարեկամը:

— Դա ոչ մի նշանակություն չունի,— առարկեց Էյնշտեյնը,— միևնույն է, եկեք:

### ԴԻՊՈՒԿ ՊԱՏԱՍԽԱՆ

Մի անգամ, երբ ֆրանսիացի նշանավոր փիլիսոփա Ռենե Դեկարտը ճաշում էր ռեստորանում, նրան մոտեցավ մի մարդ և ասաց.

— Փիլիսոփանե՞րն էլ են համեղ ուտելիքներ սիրում:

Դեկարտը պատասխանեց.

— Իսկ դուք կարծում էիք, թե բնությունը համեղ բաները միայն հիմարների համա՞ր է ստեղծել:

### ՀՈՎԱՆՈՑ՝ ՍՈՒՆԿԻ ՓՈԽԱՐԵՆ

Ֆրանսիացի գրող Ալեքսանդր Դյուման ճանապարհորդություն էր կատարում Գերմանիայում, բայց գերմաներեն չգիտեր: Մի օր նա ճաշարան մտավ և ուզեց սունկ պատվիրել: Բայց ինչպե՞ս հասկացներ մատուցողին, որ սունկ է ուզում: Նա գրպանից թուղթ ու մատիտ հանեց և սկսեց սունկ նկարել: Մատուցողը գլխով արեց, թե հասկացավ և նրան մի հովանոց բերեց:

## ՄԵՐ ԱՐԲԱՆՅԱԿԸ

*Ա. ՇԱՅԲՈՆ*

— Տու՜, տու՜, տու՜...— կանչում է ազատ
Մեր արբանյակը անհուն եթերում,
Հնչում է նրա ձայնը հարազատ
Մեզնից շատ հեռու՝ անհայտափերում։—

Տու՜, տու՜, տու՜... Աստղերին պայծառ
Հյուր եմ գնացել հարազատ երկրից,
Փայլում եմ որպես փոքրիկ լուսարձակ,
Երկնակամարի անհաս խորքերից։

Տու՜, տու՜, տու՜... Ողջու՜յն քեզ, Արև,—
Գոչում է պայծառ արբանյակը նոր,—
Ես էլ լուսեղեն մի զարդ եմ դառել
Ու բազմել երկնի գահին փառավոր։

Տու՜, տու՜, տու՜... Սահում եմ, լողում,
Աղմկում եմ ես տիեզերքի մեջ,
Լռության ծոցում աստղի պես շողում
Ու պտտվում եմ ընթացքով անվերջ։

Տու՜, տու՜, տու՜...— կանչում է ազատ
Մեր արբանյակը անհուն եթերում,
Հնչում է նրա ձայնը հարազատ
Մեզնից շա՜տ հեռու՝ անհայտ ափերում։

## *Ինչո՞ւ ենք այսպես ասում...*

### «ԼԱԿՈՆԱԿԱՆ ՊԱՏԱՍԽԱՆ»

Հին ժամանակներում հույները կոչվում էին հելլեններ, իսկ իրենց երկիրը՝ Հելլադա:

Հելլենները փոքր ժողովուրդ էին: Նրանք ապրում էին բաժան-բաժան: Յուրաքանչյուր քաղաք ներկայացնում էր մի ինքնիշխան պետություն, տարբեր օրենքներով ու սահմաններով:

Սպարտան ամենանշանավոր քաղաքներից մեկն էր: Սպարտացիները կոչվում էին նաև լակոններ, իրենց ապրած վայրի անունով:

Սպարտացիները կամ լակոնները հայտնի էին իրենց հանդուգն քաջագործությամբ, իրենց խստապահանջ ու տարօրինակ օրենքներով:

«Լակոնական պատասխան» ասացվածքը մեզ հասել է սպարտացիների կամ լակոնների պատմությունից: Նրանց շատ խստապահանջ և արտառոց օրենքներից մեկն այն էր, որ պետք է

կարճ և հակիրճ խոսեին: Այս կարճ խոսակցության ձևը հին ժամանակներից սկսած կոչվեց Լակոնական ոճ:

Այն ժամանակներում Հյուսիսային Հելլադայում՝ Մակեդոնիայում իշխում էր Ֆիլիպը: Նա Ալեքսանդր Մակեդոնացու հայրն էր: Ֆիլիպ թագավորի միակ ցանկությունն էր տիրել հելլենական քաղաքներին: Դրա համար մի հզոր բանակ կազմելով՝ արշավեց Հելլադայի քաղաքների վրա: Քաղաքները մեկը մյուսի հետևից ճանաչեցին Ֆիլիպի գերիշխանությունը: Ապա նա մի շատ խիստ նամակ գրեց Լակոնիայի սպարտացիներին: Նամակը գրված էր այսպես. «Եթե ձեր երկիրը իջնեմ, հիմնահատակ կկործանեմ և ձեր քաղաքը հողին հավասար կդարձնեմ»:

Մի քանի օր հետո Ֆիլիպ թագավորը իր նամակի պատասխանը ստացավ: Նամակը բաց արեց. այնտեղ գրված էր միայն մի բառ. «Եթե...»:

Հանդուգն սպարտացիները այս կարճ պատասխանով հայտարարում էին, մենք ձեզանից վախեցողներ չենք, եթե կարող եք եկեք:

Վ. ԳԱԼՍՏՅԱՆ

## „ՊԻՈՆԵՐԻ“ ՄՐՑԱՆԱԿՆԵՐԸ

**Մեր ամսագրի խմբագրական կոլեգիայի որոշմամբ, այսուհետև յուրաքանչյուր տարվա հունվարին մրցանակներ կտրվեն ամսագրի անցած տարվա 12 համարներում լույս տեսած լավագույն ստեղծագործություններին:**

*Սահմանված են հետևյալ մրցանակները.*

*Լավագույն պատմվածքի համար՝* 1000 ռ.

*Լավագույն բանաստեղծության համար՝* 500 ռ.

*Լավագույն շապիկի համար՝* 1000 ռ.

*Լավագույն նկարազարդման համար՝* 500 ռ.

**Մրցանակ ստացած հեղինակները կստանան նաև «Պիոներ» ամսագրի պատվո վկայագրեր:**

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.:

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41.
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—39—06:

ՎՖ 02446. Պատվեր 434: Տպաքանակ 6700: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 16/V 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91: Գինը 2 ռ.



ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝ նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Ժամանց

## ԿՐՈՍՎՈՐԴ



Ուղղահայաց.—1. Հայրենական պատերազմի հերոս, 2. քաղաքացիական պատերազմի հերոս. 4. Հայրենական պատերազմի առաջին հերոսը: 6. Հայրենական պատերազմի հերոս, որը պայքարեց և զոհվեց Օրշա քաղաքում. 8. Մայիսյան ապստամբության հերոս, 11. Հայրենական պատերազմի կրկնակի հերոս:

Հորիզոնական.—3. Հերոս պիոներ, որը ֆաշիստներից թաքցրեց դրուժինայի դրոշը, 5. հերոս ռևոլյուցիոներ. 7. Հայրենական պատերազմի հերոսուհի. 9. Հայրենական պատերազմի եռակի հերոս:

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ՌԵԲՈՒՍ



Ճիշտ լուծումից հետո դուք կկարդաք չինական ժողովրդական մի առած:

Կազմեց՝ Վ. ՄԻՆԱՍՅԱՆ

## Պատասխանում ենք

### «ՊԻՈՆԵՐ» № 4

ԳՏԻՐ՝ ԹԵ ԿԱՐՈՂ ԵՍ.—1. «Բորիս Գոդունով», 2. «Ժլատ ասպետ», 3. «Պիկովայա դամա», 4. «Մոցարտ և Սալիերի», 5. «Հեքիաթ թագավոր Սալթանի մասին», 6. «Եվգենի Օնեգին», 7. «Ոսկե աքաղաղ», 8. «Ռուսլան և Լյուդմիլա», 9. «Ջրահարս», 10. «Ալեկո», 11. «Պղնձե հեծյալը», 12. «Դուբրովսկի», 13. «Բախչիսարայի շատրվանը»:

ԿՐՈՍՎՈՐԴ— Ուղղահայաց.— 1. Անապա, 2. կապար, 3. կեռաս, 4. Կոնգո. 7. Կուբան, 8. Պեգաս, 12. Ալդան, 13. Սեդով, 14. Մինսկ, 15. Րաֆֆի:

Հորիզոնական. — 5. Օնեգա, 6. Երշով. 7. կարապ, 9. մասուր. 10. Սերով, 11. Տարաս, 14. «Մայրը», 16. Ներիս. 17. Համբո. 18. Սվիֆտ:

ՀԱՆԵԼՈՒԿ.—Այգածաղիկ

ՌՈՒԹ ՀԱՎԱՍԱՐ ՄԱՍԻ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| 4 | | | | | | | 1 |
| 1 | 5 | 8 | 2 | 6 | 2 | 8 | 4 |
| 6 | 2 | 7 | 9 | 9 | 5 | 5 | 2 |
| | 4 | 3 | 6 | 7 | 3 | 8 | |
| | 7 | 3 | 5 | 3 | 9 | 1 | |
| | 9 | 8 | 1 | 7 | 4 | 6 | |
| | 1 | 7 | 9 | 3 | 8 | 1 | |
| | 6 | 4 | 2 | 6 | 5 | 2 | |
| | 3 | 7 | 5 | 1 | 5 | 4 | |
| 5 | 8 | 6 | 1 | 6 | 3 | 7 | 9 |
| 8 | 3 | 9 | 4 | 7 | 9 | 2 | 4 |
| 2 | | | | | | | 8 |



2 Ռ.

# ԱՆՄԻՏ ԱՅԾԻԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

*(Սկիզբը տե՛ս «Ծիծեռնակ» №№ 3, 4)*



Այծիկը տեսավ
Բադիկին լողվոր,
—Ո՞նց գնամ,—ասավ,—
Ես Պացանովո։



Պատասխանի տեղ
Բադը կվկվաց.
—Ֆրանսերե՞ն ես
Խոսում,— այծն ասաց.



Փովեց գիշերը
Սև ծյութի նման.
Քիչ մնաց խեղճը
Կորցներ ճամփան։



Հանկարծ ոռնալով
Հայտնվեց մի դև.
Աչքերը կլոր՝
Ասես զույգ հրդեհ։



Անմիտը սակայն
Զչարժվեց տեղից,
Պոզերը տնկած
Սպասեց դևին.



Ջար դևը եկավ
Ու զարկեց նրան,
Թռավ այծն, ընկավ
Հենց դևի վրա։




Երբ նրան տեսան՝
Գոռացին մարդիկ.
—Մեր ձեռքից՝ էլ սաղ
Ջե՛ս պրծնի, Այծիկ։ .



Մեր Անմիտն էլ հո
Այդքան հիմար չէ՞ր.
Ցած թռավ թափով.
Սկսեց փախչել։



Վազում էր քաղցած,
Երբ ծառի ճյուղին
Տեսավ նա հանկարծ
Շեկլիկ սկյուռին։

*(Շարունակելի)*